# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

'Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉ Ց'ԱՐՇԱԿՈՒՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ

ՀԱՄՏԱՏՈՒԹԻՒՆԸ



Գրեց

ՍԿՍՆԱԿ ԲԱՆԱՍԷՐ

(Հանուած «Բանասէր» հանդէսէն. հտ. Ե)



ՊԱՐԻՍ

1903

Patmutiwn Hayts i skzbane minch...

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

'Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉ Ց'ԱՐՇԱԿՈՒՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ

ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ




Գրեց՝

ՍԿՍՆԱԿ ԲԱՆԱՍԷՐ

(Հանուած «Բանասէր» հանդէսէն, հտ. Ե)



ՊԱՐԻՍ

1903

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Այս վերջին տարիներ քննական ազգային պատմութիւնն, օտար մատենագրաց վկայութիւնք, Պարսիկ եւ Ասորեստանեայց սեպաձեւ արձանագրութեանց ընթերցմունք, եւ հայկական նմանօրինակ վիմագրոյմ գրուածոց մասնական լուծմունք, այնչափ փոխած են մեզ 'ի Խորենացւոյ աւանդեալ ազգային պատմութիւնն որ նոյն իսկ ոմանք յանդգնեցան մեր պատմահայրն առասպելապատում եւ երազապատում անուանել. սակայն լուրջ քննութիւնք հաստատեն թէ՝ Խորենացւոյ պատմութիւնն իր գլխաւոր գծերուն մէջ իրական է, անոր պատմած մեծ դէմքեր ու դէպքեր գոյութիւն ունեցած են, թէպէտ ժամանակագրական տարբեր կարգաւ, եւ միայն այս հայրենասէր գրչի Հայոցս պատմական կենաց սկիզբն Ասորեստանեայցիններին նման 23 դարեր յառաջ քան զՔրիստոս մղելու ճիգն՝ հարկադրած է զայն, երբեմն՝ միայն իշխանաց ցանկեր հաղորդելու, որք հաւանականաբար գոնէ իրարու յաջորդող վեհապետներ գոյութիւն ունեցած չ'են։ Այս ցանկերու միայն առաջնոյն (որ ստուարագոյնն է) չնորհիւ՝ 10 դարերու ժամանակամիջոց մը չահած է։*

*Դեռ ժամանակն հասած չ'է Հայկազեան անուանեալ այս կարեւոր շրջանի իրական պատմութիւնն գրելու. պատմական ու բանասիրական հետազօտութիւնք եւ ազգային սեպաձեւ արձանագրութեանց կատարեալ ընթերցմունք՝ անշուշտ այս գործն պիտի դիւրացնեն, սակայն առ այս դեռ երկար տարիներու պէտք կայ։*

*Մենք արժան համարեցինք ցարդ ձեռք բերած ծանօթութեանց շնորհիւ ուրուագծել հաւանական պատմութեան գծերն, ու գրել նախափորձն որ կրնայ շատերու գաղափար մը տալ այս նախնական շրջանի ազգային պատմութեան մասին եւ իբրեւ առաջնորդ ծառայել՝ գիտնոց եւ բանասիրաց հետազօտութեանց հետեւելու։*

*Գործս երեք մասերէ կը բաղկանայ. առաջինն մեր բնագաւառի հին բաժանմանց, անուան, ժողովրդեան լեզուի, ցեղի եւն. վրայ ընդհանուր տեսութիւն մ'է, երկրորդն Հայուն մինչ ց'Արշակունի հարստութեան քաղաքական պատմութիւնն է, իսկ երրորդն այդ ժամանակամիջոցի քաղաքակրթութեան պատմութեան նախափորձն։*

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉԵՒ Յ'ԱՐՇԱԿՈՒՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ

### ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՔ

### Ա.

*Հայաստանի աշխարհագրական եւ տեղագրական վիճակն զայն շատ մը անջատ մասերու (նահանգ) կը բաժնէ, որոյ վասն եւ 'ի վաղուց այդ նահանգներն իրենց ուրոյն իշխանութիւններն ունեցած են, եւ որք ապա ծնունդ տուած են Հայաստանի ծանօթ նահանգաց՝ նկարագրեալ 'ի Խորենացւոյ։*

*Նախահայերու կամ Խալդեանց օրով շատ մը փոքր իշխանութիւններ կը յիշատակուին 'ի Հայս, որոց գլխաւորներն են Ուրարտի (1) (Արարատ) Վանայ ծովուն հիւսիսակողմն, Բիանա՝ Վանայ ծովուն արեւելակողմն, Մաննա կամ Միննի՝ Բիանայի եւ Ուրմիա լճին միջեւ, Մուսասիր՝ Վանայ լճին հարաւային արեւմտեան կողմը (Մուշ), Մելդիա՝ Ուրարտու արեւելեան կողմն (Բարձր Հայք), Նաիրի (2) Միջագետաց վերին կողմն համապատասխանելով Խորենացւոյն Աղձնիք եւ Ծոփք նահանգաց (3), Մելիդ (Մելիտինէ) Նաիրիի արեւմտեան կողմը (Դ. Հայք), Ուրմիա լճին շրջակայ երկրաց փոքր իշխանութիւնք, եւն։*

*Այս համացեղ իշխանութիւնք շատ անգամ դաշնակցութիւններ կը կազմէին դիմադրելու համար թշնամեաց՝ եւ նամանաւանդ Ասորեստանեայց՝ որ իրենց դարաւոր ախոյեանն եղած է։*

*Այս փոքր թագաւորութիւնք բաժնուած են շատ մը գաւառներու, իւրաքանչիւրն ունենալով իր արքայիկն (գաւառապետ իշխանն) յորոց գան եւ ապագայ հայ նախարարութիւնք։ Ասորեստանեայք այս ժողովուրդն Ուրարտեան (Արարատեան) կ'անուանեն, եւ սա ոչ միայն Ուրարտու իշխանութեան Հայկական դաշնակցութեան գլուխ գտնուած*

---

*(1) Ըստ Ասորեստանեայց Ուշտու, Ուրաշտու, եւ ըստ Բաբելացւոց Ուրտու, Ուրարտու։ Այս բառն բարձր երկիր ըսել է ըստ Ասորեստանեայց։ (2) Նաիրի՝ Ասորեստանեայց լեզուով գետ կամ գետոց աշխարհ ըսել է։ (3) Սաղմանասարէն առաջ Նաիրին շատ մեծ էր եւ մինչ Բարձր-Հայք ու Վանայ ծովը կը ձգուէր, այնպէս որ ոմանք կարծեցին թէ Նաիրին ողջոյն Հայաստանի անունն էր։ Սաղմանասարէն վերջ կը փոքրանայ եւ Սարգոնէն վերջ շատ քիչ անգամ կը յիշատակուի։*

*ատեն՝ այլ եւ անկէ վերջ ալ երբ գահերէց աթոռն 'ի Բիւզանդ տեղափոխեալ էր։ Հերոդոտ երկրի բնակչութիւնն Ալարոդեան կ'անուանէ՝ որ հաւանականաբար Ուրարտեանի կամ Արարատեանի աղաւաղումն է։ Իսկ երկրի ժողովուրդն ինքզինքն Խալդիի ծառայներ կ'անուանէ՝ յանուն Խալդիի, իրենց գերագոյն Աստուծոյն, որոյ վասն եւ շատեր սկսան վերջերս զնախահայս Խալդեանք կոչել։*

*Հաւանականաբար ասկից գայ եւ Խաղդիք անուանակոչութիւնն Հայաստանի հիւսիսակողման եւ Սեւ Ծովու եզրն գտնուող երկրին, ուր բնակող ժողովուրդն՝ դուցէ աւելի երկար ատեն հաւատարիմ մնալով իրենց Աստուծոյն՝ այսպէս անուանեցաւ բնագաւառնին։*

*Հայ անուանակոչութիւնն ոչ 'ի վիմագրոշմ արձանագրութիւնս տեսնուած է, եւ ոչ ալ վաղեմի պատմագրաց մէջ յիշատակուած է։ Միայն Վրացիք զմեզ Հառս կ'անուանեն։ Ըստ Խորենացւոյ՝ մեր ազգութեան հիմնադիր Հայկ նահապետի անուամբ՝ Հայ կը կոչուիմք, ըստ ոմանց՝ Խալդի կամ Հալդի Աստուծոյ անունէն եկած է, եւ Հալդին՝ Հայդ, Հայ եղած է․ ըստ այլոց (Եէնսէն եւ իրեն հետեւողք) Քեթացիներն* (1) *կամ Հաղեաններն Է-րդ․ դարուն (Ն. Ք.) տիրեցին այս երկրին եւ իրենց անուամբ երկիրն ու ժողովուրդն յետ այնորիկ անուանեցաւ Հատք կամ Հայք։*

---

(1) *Ի Ս. Գիրս յիշատակեալ Քեթացիներն, զորս այժմ* Khiti, Kheti, Khatti, Hittite *կ'անուանեն Եւրոպացիք եւ Վիէննայի Մխիթարեանք ու իրենց հետեւողք Հաթեան կը գրեն։*

*Քեթացիք որ մոռցուած էին, գիտունք շնորհիւ Եգիպտական եւ Ասորեստանեան արձանագրութեանց վերակազմեցին անոր պատմութիւնն այս վերջին տարիներն։ Քեթացիք Կովկասէն եկած կը թուին նախ 'ի Կապադովկիա, եւ անտի հաստատուած դէպ յ'արեւմուտս 'ի Հիւսիսային Սուրիա եւ 'ի Կիլիկիա։ Ասոնց մի մասն Եգիպտոսի Հիւքսոս (հովիւ) թագաւորներն տարած են Մեռեալ ծովու արեւմտեան կողմերն, զորս Փոքր Քեթացիք կ'անուանէին Եգիպտացիք, իսկ հիւսիսի մեծ մասն Մեծ Քեթացիներ։ Փոքր Քեթացիներն Հրէից հետ դաշնակցեցան եւ անոնց հետ խառնուեցան։*

*Մեծ Քեթացիք Եգիպտացի աշխարհակալաց Թութմէս Գ., Ռամսէս Ա., Ռամսէս Բ., եւ Սէթի Ա. ի հետ չափուած են ու քանիցս հաշտութիւն կնքած անոնց հետ։ Քեթացիք իրենց սահմաններն ընդլայնեցին մինչ Յունական Արշիպեղագոսն եւ Փոքր Ասիոյ խորերն, Փռիւգիացիներէն քանիցս յետս մղուեցան։ Ռամսէս Գ. ի ատեն կը տկարանան եւ նամանաւանդ Ասորեստանեայց ծաւալման ատեն, կր յաղթուին ու կր հպատակին Թագղաթ Փաղասարի (ԺԱ. դար), քիչ վերջ փոքր ինչ կը զօրանան եւ յաղթութիւն մը կը տանին Ասուր Ռափամարի վրայ․ սակայն Ասուր Նազիրբալ* 877*ին կը տիրէ անոնց եւ Կառկամիշ հարուստ մայրաքաղաքն կը կողոպտէ․ Սաղմանասար* 858*ին կրկին կը հպատակեցնէ զանոնք։*

*Քեթացիներն այլեւս Ասորեստանին կը յարգեն, եւ դէպ յ'Արեւելս Հայաստանի վրայ կ'սկսին յարձակիլ պարբերաբար, եւ միշտ յետս կր մղուին, եւ այսպէս դրեթէ միշտ Մարաց եւ Պարսից կայսրութեան օրով յորժամ բոլորովին կ'անհետանան։*

Այս երկու բացատրութիւնք եւս անհաւ են եւ ոչ գոհացուցիչ առ այժմ, եւ ինչպէս առիթ պիտի ունենամք ըսելու, Հատեանց Հայոցս տիրած ըլլալը խնդրական է դեռ։ Յէնսէնի կարծիքն ընդունուած չ'է շատ մը գիտնոց կողմանէ։

Իսկ գալով Արմէնի բառին՝ որով կ'անուանեն օտարք մեր ազգն ու բնագաւառն, ըստ Խորենացւոյ Հայկազն Արամ նահապետի անունէն առնուած է, որ քաջարի իշխան մ'եղած է եւ դրացի ազգաց վրայ նշանաւոր յաղթութիւններ տանելով իր անուամբ սկսուած է ճանչցուիլ մեր ազգն ու իր երկիրը։ Խորենացւոյ Արամն հաւանականաբար սեպաձեւ արձանագրութեանց Արամէն է, Քրիստոսէ 9 դար առաջ ապրող Ուրարտեան թագաւորն՝ որ ազգային դաշնակցութեան գլուխն անցաւ, Սաղմանասարի դիմադրեց ու վերջապէս չարաչար յաղթուեցաւ։ Ներկայիս մէջ կան եւ Խորենացւոյ հետեւորդներ. սակայն այս բացատրութիւնն հաւանական չ'է մեզ համար, զի բնական չ'է որ այդպէս չարաչար յաղթուող մը, որով հարստութիւն մը վերջ կը գտնէ՝ իր անունն տայ իր երկրին եւ ժողովրդեան, եւ եթէ այդպէս եղած ըլլար՝ յետ Արամէի Ասորեստանեայց վիմագրոչմ արձանագրութեանց մէջ այս անունն կը գտնէինք։

Նմանապէս հաւանական չ'է որ 7րդ դարուն վերջերն Բիայնայի հարստութեան Էրիմէնի թագաւորին անունէն առնուած ըլլայ, զի այն ատեններ հայ իշխանութիւնն տկարացած էր, եւ Էրիմէնի չ'ունեցաւ որ եւ է նշանաւոր գործ, իր անունն տարածելու եւ նովաւ կոչել տալու համար իր բնագաւառն։

Առաջին անգամ Դարեհ Ա.ի Պեհիստոնի եռլեզուեան արձանագրութեան պարսկերէն խմբագրութեան մէջ կը տեսնուի Արմինա բառն իբր համապատասխան Բաբելոնական բնագրին Ուրարտու բառին։

Ոմանք ըստ եբրայականին Հար-Մինիէն եկած կը կարծեն այս բառն, այսինքն Լեռան Մինիոյ կամ Լեռնադաշտ Մինիոյ երկրին. եւ կամ Ար-Մինիի եւ Լեռան-Լուսնի, իբր թէ Հայք լերանց վրայէն լուսինն դիտող ու պաշտող եղած ըլլան եւ ըստ այնմ անուանեալ իրենց երկիրն։

Ըստ Տարմիսթէթէրի եւ Բասմաջեանի Արարաս եւ Մինիի երկրաց Դարեհ առաջնոյ լուծին տակ՝ անոր կայսրութեան 18րդ նահանգն

---

Քեթացիք զարգացեալ քաղաքակրթութիւն մ'ունէին շնորհիւ Եգիպտոսի եւ Ասորեստանեայց հետ շարունակական շփմանց։ Նշանագրերով արձանագրութիւններ թողուցած են, դեռ անընթեռնելի որք Եգիպտական նշանագրերէ եկած կը համարուին։

Արուեստ եւ վաճառականութիւն զարգացած էր. շատ հարուստ էին. կրօնքն Քանանացւոց կրօնին կը մօտենար։

Երկիրն փոքր իշխանութեանց բաժնուած էր որք երկրի վեհապետին կը հպատակէին։

կազմելուն՝ այդ երկու երկրաց միացեալ անուամբ Ար-Մինեի անուանեցաւ 'ի Պարսից եւ ապա յայլոց։

Այս տեսութիւնն շատ հաւանական է, սակայն ոմանք աւելի հին կը համարին այդ բառն եւ նոյն իսկ Թուղմէս Գ. եգիպտացի աշխարհակալին առած երկրաց 'ի շարս յիշատակեալ Րմենենե աշխարհն Արմինեին կը համարին։

Վերջապէս Արմէն էր անունն փռիւգական (1) ցեղի մը, ըստ Եւտոքսոսի եւ Հերոդոտոսի, որ 7րդ դարուն դէպ Արեւելք Ալիսի ափերըն գնաց եւ ապա 'ի Փոքր Հայս եւ վերջապէս 'ի Մեծ Հայս, ու երկրին եւ ժողովրդեան իր անունն տուաւ։ Ընդհանուր առմամբ այժմու գիտունններն կ'ընդունին որ մեր բնագաւառն 7րդ դարուն արեւմտից կարեւոր գաղութ մ'ընդունեց իր մէջ. սակայն այդ գաղութի ուստի գալուն մասին կարծիքներն կը տարբերին։

Ըստ Հերոդոտոսի եւ իր հետեւողաց Փռիւգացիներն էին գօքա որք Հատեաններէ եւ Գամիրներէ հալածուելով նախ դէպ 'ի Ալիսի ակունքն եւ ապա 'ի Հայս մտան, վանելով տեղւոյն Ալարոդեան ժողովուրդն՝ դէպ 'ի հիւսիս մինչ Կովկասեան լեռնաշղթան՝ անոնց տեղն բռնեցին։

Ստրաբոն անշուշտ այդ գաղութը ակնարկելով կ'ըսէ թէ՝ Հայք 'ի Թեսաղիոյ եկած են. Խորենացին ալ ուժ կուտայ սորա «Հայք ի Մեծաց Թեսաղացւոց են սերեալ» ըսելով։ Այս երկու կարծիքներն կրնան հաշտուիլ իրարու հետ զի, Փռիւգեցիք ալ արդէն այդ կողմերէն սերած են (Ստրաբոն)։

Է. Մայես 'ի Թրակիոյ համարի զՀայս. սա եւ մասամբ Ստրաբոնի կարծիքն կը չօշափէ, զի հին Թրակիացիք ցեղակիցք էին Թեսաղացւոց։

Ոմանք վերջապէս այդ եկ ժողովուրդն Կեթացիներ կը կարծեն (Եջնաէն), եւ ուրիշներ (Լեման) Կիմմերեաններն (2) կամ Գամիրք։

---

(1) Փռիւգեցիք Մակեդոնիոյ կողմերէն եկած (Ստրաբոն) ու հաստատուած են 'ի Փոքր Ասիա։ Լեզունին յունականի մօտ էր. երկրագործութեան մեծ յարգ կուտային. լաւ կենդանաբոյծ եւ մանաւանդ ձիաբոյծ էին. իրենց թագաւորներն հարստութեամբ նշանաւոր էին։ Փռիւգեցիք ենթարկուած են Կեթացւոց պարբերական արշաւանաց, զորս ընդհանրապէս կը յաջողէին յետս մղել։

Կիմմիրեաններն կամ Գամիրք դրաւեցին Փռիւգիան (695) եւ որ ապա Լիւդիոյ մի նահանգն եղաւ։ Կիաքսարի օրով Մարաց կայսրութեան մաս կը կազմէր. ապա Կիւրոսի լուծին տակ մտաւ, որոյ 13րդ կուսակալութեան մէջ կ'իյնար։

Փռիւգեցիք մասնաւոր գիր ունէին՝ որոց տառերէ ոմանք ուղղապէս Փիւնիկականէն եկած էին, եւ միւսներն Կադմէականէն։

Փռիւգեցւոց գլխաւոր Աստուածք երեք էին. գերագոյնն էր Բագայոս, ապա գար Մենէս (Լուսոյ Ա.Ծ.) եւ Ամմա Մայր Աստուածուհին որ ըստ երկրաց տարբեր անուններ կ'առնէր։

(2) Կիմմերեանք Կովկասի լեռնաշղթային եւ Սեւ Ծովուն հիւսիսային կողմը բնակող ժողովուրդ մ'էին. 'ի մէջ կոյս 8րդ դարուն Սկիւ-

Լեմանն Ստրաբոնի վկայութեան կռթնելով՝ զՀայս 'ի Թեսաղիոյ եկած կը կարծէ, զի՝ կ'ըսէ, Կիմմերեանք Թեսաղիայէն Ասիա անցան։ Իբր ապացոյց կը ցուցնէ Թեսաղիոյ Օրմենիումը եւ Փռիւգիոյ Արմենիոնը քաղաքները՝ որք այդ գաղթականաց երբեմն կեդրոնները եղած են եւ զիրենք հաստատող ցեղի անունն 'ի յայտ կը բերեն։ Ուստի եւ Հերոդոտի Արմենիոնը ցեղն Կիմմերեան է՝ որ Մակեդոնիայէն եւ Փռիւգիայէն անցնելով իրենց անուանակիր քաղաքներ թողուցած են։

Ըստ Լեմանի Կիմմերեանք երեք անգամ մուտք գործած են 'ի Հայս․ նախ առանձինն, երկրորդն Թրակացւոց հետ եւ երրորդին Խեթացւոց հետ, որոնց դրացի էին Փոքր Ասիոյ մէջ եղած ատեննին։

Հաւանական է որ 7րդ դարուն Փոքր Ասիայէն դէպ 'ի Հայս ժողովրդեան շարժում մ'եղած է, սակայն այդ գաղութն Խեթացի չի կրնար ըլլալ, զի Սարգոն 717ին արդէն քանդած է անոնց իշխանութիւնն, եւ թէ այս ցեղի քաղաքակրթութեան եւ վիմագրոշմ արձանագրութեանց հետքեր չ'են գտնուիր 'ի Մեծ-Հայս։ Գամրաց Հայոցս տիրելն ալ հաւանական չ'է, զի ինչպէս 'ի պատմութեան պիտի տեսնեմք՝ Փոքր Ասիոյ մէջ զարնուեցան Սկիւթական հեղեղատին, անոնց հետ խառնուեցան եւ ի միասին վռնտուեցան Կիաքսարէն։ Այդ եկ ժողովուրդն հաւանականաբար 'ի Փռիւգիոյ կուգար․ առ այս վկայութիւն ունիմք նախ գրեթէ ժամանակակից արժանահաւատ պատմչի մը (Հերոդոտ) վկայութիւնն եւ թէ Փռիւգեցիք ընդհանրապէս արդէն հին պատմչաց կողմէ մեզ ցեղակից անուանուած են, եւ լեզուաբանք անոնց ու մեր երբեմն բառերու միջեւ մեծ նմանութիւն կը գտնեն։ Հնախօսք Հայոց եւ Փռիւգեցւոց հագուստներն համանման կը համարեն ընդհանրա-

---

Թակած Սկոլոտ ցեղն՝ Մաղգութներէն յաղթուելով՝ դէպ արեւմուտք եկաւ, Վոլկան անցնելով Կիմմերեաններն հալածեց։ Կիմմերեանց մի մասն Խրիմի թերակղզին ապաստանեցաւ ու այդ տեղւոյն տուաւ իր անունն, սակայն մեծ մասն Տնիեպեր եւ Դանուբ գետերէն անցնելով՝ Վոսփորի նեղուցէն Ասիա եկան, ու տարածուեցան 'ի Միսիա, 'ի Տրովադա, 'ի Բիւթանիա, 'ի Փափլակոնիա, ու տիրեցին այդ երկրաց․ Սինոպն իրենց մայրաքաղաքներէ մին ըրին։ Ապա Փռիւգիոյ ալ տիրեցին՝ որոյ վերջին թագաւորն Միդաս անձնասպան եղաւ թշնամեաց ձեռք չ'անցնելու համար (695)․ Լիւդիոյ վրայ ալ գացին եւ Սարդիսն առին ու կողոպտեցին․ 633ին Մագնեսիան այրեցին ու Եփեսոսն պաշարեցին․ սակայն Արեւելից՝ Ասորեստանեայց Ասուր Հադդոնի բանակէն յաղթուեցան Կապադովկիոյ մէջ 678ին։ Կէս դար վերջ կրկին զարնուեցան Ասորեստանեանց՝ Կիլիկիոյ մէջ՝ եւ յաղթուեցան։ Ապա Սկիւթական արշաւանքին հետ զարնուելով անոնց խառնուեցան։ Ըստ Ցիմմերի գերման գիտունին՝ սոքա կը ներկայացնեն հին պատմագրաց ոմանց Գամիրքն, որք երկրագործ ու այգեպան էին, ու ըստ Ստրաբոնի՝ մասնաւոր լեզու մ'ունէին։ Սեմացւոց նման կը թլփատուէին, խոզի միս չ'էին ուտէր, մեհենից մէջ պաշտօնական կուսապղծութիւն կը կատարէին։ Գամիրք ապա Ա. Հայք ալ բռնուած են։

պէս․ եւ վերջապէս հաւանականաբար ասոնք բերին ի մեզ մեր ազգային այբուբէնն, այնչափ նման իրենց 'ի Փափագեցւոց սերած գրերուն՝ որք յետ ժամանակ մը գործածութեան, բարձի թողի եղաւ եւ Մեսրոպ զայնս կատարելագործելով 'ի գործածութեան դրաւ Ե-րդ դարուն, եւ որ իր անունն կը կրէ այսօր։

Ապագային թողլով այս կարծեաց մասին վերջնական վճիռ արձակել, չ'եմք կրնար ընդունիլ թէ այս եկ ժողովուրդն երկրին վաղեմի բնակչութիւնն ամբողջովին հալածելով դէպ 'ի հիւսիս անոնց տեղն բռնած ըլլայ․ անշուշտ աւագ մեծամասնութիւնն միացած է անոր, եւ նորեկ ժողովուրդն խառնուած է անոնց հետ։

Այդ եկերն՝ ըլլան Փռիւգեցի, Կիմմերեան եւ կամ նոյն իսկ Գեթացի, ամենքն ալ արիական մեծ ընտանեաց վերաբերող ցեղեր են․ առ այս ամեն ոք համաձայն է․ սակայն գալով երկրի բնիկ հինաւուրց ժողովրդեան ցեղին՝ հեղինակներն տարակարծիք են։ Ըստ ոմանց սեմականք էին նոքա, ըստ այլոց արիականք։ Մեր պատմահայրն՝ մեր առաջին նահապետն՝ Հայկ՝ Բաբելոնէ բերելով՝ կարծես ուժ կուտայ առաջին ենթադրութեան։ Այս կարծեաց պաշտպանք իրենց իբրեւ փաստ կը համարին Հայոցս կազմախօսական ; լեզուական եւ կրօնական ինչ ինչ սեմական յատկութիւններն ու տարրերն․ բայց այլք արդար իրաւամբ դոքա բնական կը համարին երկու դրացի ժողովրդոց համար՝ որք դարաւոր առնչութիւններ ունեցած են, եւ հետեւաբար անզօր նախահայուն սեմականութիւնն ապացուցանելու, եւ յենլով Հայաստանի աշխարհագրական դրից եւ իրանական ցեղից հետ ունեցած լեզուական խնամութեանց եւն.՝ նախնական բնակչութիւնն արիական կը համարին։

Մեր նախահարք անշուշտ կը խօսէին այն լեզուով որով գրուած են իրենց վիմագրոշմ արձանագրութիւնք․ արդ՝ այդ սեպաձեւ գրութիւնք սկսուած են կարդացուիլ․ սակայն լեզուի մասին գիտունք կարծեօք կը տարբերին․ Հինքս, Մորթման աշխատեցան հայերէնով բացատրել, զայդ կը պնդէ դեռ Հիսարլեան․ Հ. Սանտալճեան բառերու մեծ մասն միայն հայերէն կը կարծէ․ Կիւար անծանօթ լեզու մը կը համարի, Լընօրման եւ Սէյս՝ վրացերէնի մերձաւոր կը կարծեն եւ սովա- ուժ տուած կ'ըլլան Հերոդոտի վկայութեան՝ որ Ալորոտեաններն եկ ժողովուրդէն դէպի հիւսիս հալածեալ կը համարի, Միաբան (Գալուստ Տէր Մկրտիչեան) Ուտերէնի շատ մօտ կ'ենթադրէ, եւ սովաւ Հերոդոտի հետեւողաց դասէն կրնայ համարուիլ։ Ըստ ոմանց այդ արձանագրութեանց մէջ խոր կամ խոռ բառերէ զատ հայ բառ չի տեսնուիր (1)։ Ժամըն հասած չ'է դեռ այս կնճռոտ հարցի մասին վճիռ արձակել։

---

(1) Սեպաձեւ արձանագրութեանց ընթերցման եւ հասկացողութեան մասին պիտի խօսիմք յ'ընթացս մեր գրութեան։

## Բ.

Մեր պատմահայրն Խորենացին Քրիստոսէ 23 դարեր առաջուընէ կը սկսի Հայոց պատմութիւնն. սակայն ըստ այժմու գիտական սկզբանց եթէ 'ի նկատի առնենք միայն վիմագիր արձանագրութեանց եւ ժամանակակից պատմիչներու վկայութիւնք՝ մեր բնագաւառի մասին ամենէ հին յիշատակութիւնն 16րդ դարուն ապրող Թուդմէս Գ. եգիպտացի աշխարհակալինն է (1), որոյ նուաճած երկրաց 'ի շարս յիշատակեալ Րմէնէն անուանեալն՝ Հայաստանն կը կարծուի.

Եգիպտացիք դար մը միայն այս երկրին տիրելէ ետքը, 'ի մէջ կոյս 15րդ դարու (1440ի առեններն)՝ քաշուեցան. Ասորեստանեայք սկըսան տակաւ զօրանալ, եւ իրենց երկրի սահմանները ընդլայնել. Դէպ ի Հիւսիս արշաւանաց ենթակայ եղած է Հայաստանի հարաւակողման Նաիրի նահանգն. Ասորեստանեայց 'ի Նաիրի ըրած արշաւանաց առաջինն տեղի ունեցած է 1400ի առեններն, սակայն Նաիրիի տիրապետութեան փորձն Սաղմանասար Ա. ի (1330-1310) օրով կը սկսի եւ կը շարունակուի 'ի ձեռն իւր որդւոյն Թագղաթասար Ա. ի (1310-1270). Նաիրիցիք ապա իրենց ազատութիւնն ձեռք ձգեցին, սակայն Թագղաթ Փաղասար Ա. (1108-1080)՝ առաջինն յ'Ասորեստանեայց՝ ամբողջ Նաիրիի տիրեց իր երեք արշաւանքներով. երկրորդ անգամուն իր դէմ ունեցաւ 23 դաշնակից իշխաններ (գաւառապետ) որոնց թիւը ապա 60ի հասաւ. անոնց յաղթեց ու վրանին 1200 ձիու եւ 2000 եզի տարեկան հարկ մը դնելով ու իշխանաց զաւակներն պատանդ առնելով հեռացաւ.

Հաւանականաբար այս զօրաւոր հարուածի շնորհիւ Նաիրին հարկատու մնաց Ասորեստանի երկու դարեր. 9րդ դարուն կրկին Նաիրիցիք կը խլրտին. Թագղաթասար Բ. (889-885) կը ստիպուի զանոնք զսպելու համար անձամբ գալ, սակայն սորա որդւոյն Ասուր Նածիրաբաղայ (Սար-

(1) Նինուաի եւ Շամիրամի 19րդ դարուն Հայաստանի տիրապետութիւնն՝ այդ անձնաւորութեանց գոյութեան նման առասպելային է.

դանապաղ Ա.) օրով (885-860) Նաիրիցիք կրկին կ'ապստամբին, եւ զորս Ասորեստանեայն չորս արշաւանքով հազիւ կը յաջողի հպատակեցնել։

Այս առեններն (ի մէջ կոյս 9րդ դարուն) հայկական իշխանութիւնք ի տես Ասորեստանեայց որ քան զօր զօրանալուն՝ եւ նախատեսելով իրենց ընդհանուրին սպառնացող վտանգն՝ դաշնակցական միութիւն մը կը կազմեն, իրենց գլուխ ունենալով՝ Ուրարտուի Թագաւորն Արամէ (1)։

Ասորեստանեայք հաշտ աչքով չ'էին կրնար նայիլ այս միութեան, ուստի եւ Սաղմանասար Բ. (860-825) ստիպուեցաւ բազմիցս արշաւել Հայոց վրայ եւ վերջապէս յաջողեցաւ համայն երկիրն աւրել, եւ Արամէի մայրաքաղաքն Արզասկուն կամ Արամալի (Արմաւիր ?) գրաւել եւ բովանդակ երկիրն հարկատու ընել, որով եւ Արամէ իր Ուրարտեան հարստութեան վերջին թագաւորը կ'ըլլայ։

Սարիդուրիս Ա.՝ Լուտիպրիթի որդին՝ քանի մը տարիներէ ետք Ուրարտական իշխանութեան գլուխն կ'անցնի։

Ո՞վ էր Լուտիպրիթ. Ասորեստանեայց կողմանէ Ուրարտուոյ վրայ կարգուած Հայկազն կառավարի՞չ մը, թէ հարկատու իշխան մը եւ կամ սոսկ անհատ մը՝ որոյ զաւակն կը յաջողի ազգային իշխանական աթոռն վերականգնել։ Եթէ Լուտիպրիթ յաջորդ մը չ'է Արամէի՝ ի՞նչպէս կառավարուեցաւ երկիրն մինչ Սարիդուրիս Ա. յայտնի չ'է։

Սարիդուրիս Ա. Ուրարտեան իշխանութեան գլուխը անցնելով երկիցս Սաղմանասարի կը դիմադրէ 833ին եւ 829ին. ապա (828) իր աթոռն Տուսպաս (Տոսպ = Վան) կը փոխադրէ՝ ամրութեան աղագաւ, ու զայն անառիկ վիճակի կը վերածէ (2), ինքզինքն Արքայից արքայ, Բիանայի թագաւոր եւ Նաիրիի իշխան կը հռչակէ. բազմիցս կը դիմադրէ Սաղմանասար Բ.ի։ Նինուէէն դպիրներ բերել տալով՝ Ասորեստանեայց վեհապետներու նման, ու անոնց պարծենկոտ ոճով, իր գործերն արձանագրել կուտայ ապառաժից վրայ, անոնց սեպաձեւ գրերով եւ անոնց լեզուաւ, յորոց երկու արձանագրութիւնք ծանօթ են մեզ։ Իր յաջորդներն այլ եւս ինքզինքնին Բիանայի թագաւոր, Տուսպասի մայրաքաղաքին տէր կը հռչակեն, սակայն Ասորեստանեայք միշտ Ուրարտուի թագաւոր կը կոչեն զանոնք։

Սարիդուրիսի յաջորդին՝ Իշպուինիս Ա.ի օրով Ասորեստանեայց Շամշի Ռամման Բ. արքայն (825-812) երիցս արշաւով Նաիրին կը հպատակեցնէ, ու վրան ձիու տուրք կը դնէ, սակայն Բիանան յաղթանք կը ներշնչէ. եւ Ասորեստանեայն անդ չ'երթար։

---

(1) Գիտութեան ներկայ վիճակին մէջ կարելի չ'է Ուրարտուի արքայից իշխանութեան սկիզբն եւ վախճանն որոշել, սակայն քանի որ իրենց ժամանակակից Ասորեստանեայց թագաւորներու իշխանութեան ժամանակն ցոյց կուտանք, ուստի եւ դիւրին է մերայնոց ժամանակըն մակաբերել։ (2) Ուր երբէք Ասորեստանեայք չ'են կրցած մտնել։

Իսպուինիս կը սկսի երկրին լեզուաւ գրել տալ իր գործոց արձանագրութիւններն, մինչ գործածելով Ասորեստանեայց սեպաձեւ գրերն․ իւր մի արձանագրութեան մէջ 46 Աստուածութիւնք յիշատակեալ են, գուցէ եւ ինքն ըրած է անոնց կարգադասութիւնն։

Մինուաշ (Մանաւազ?) իր հօր ծերութեան՝ նախ իբր գահակից, եւ ապա իբր յաջորդ կ'իշխէ։ Սորա թագաւորութեան առաջին տարիներն մայրն Թարի-բիաշ իբրեւ խնամակալ կ'աջակցի իր զաւկին — այդ միջոցին շինել կուտայ, Տոսպայ նշանաւոր ջրմուղներն՝ զորս Շամիրամայ կը վերագրեն։ Մինուաշ իշխանութեան գլուխ անցնելուն կ'ընդլայնէ իր տէրութեան սահմաններն, Ուրարտեան լեզուաւ իր գործերն դրոշմել կուտայ, մեհեաններ ու պալատներ կը շինէ, եւ Ասորեստանեայց Ռաման-Նիրարի (812-784)՝ հետ քանիցս յաջողապէս կը չափուի․ կ'աշխարհակալէ դէպ ի Հիւսիսային արեւելք եւ ի մէջ այլոց Էրիտուանի երկրին Լուհէնինի քաղաքն կը գրաւէ ու Մինուախինիշինի (Մինուաշակերտ = Մանազկերտ?) կ'անուանէ։ Քեթացւոց դէմ պատերազմելով յետս կը մղէ զանոնք եւ յ'Արեւմուտս յաջող արշաւներ կ'ընէ։ Մինուաշ ուրիշներէ շատ աւելի արձանագրութիւններ թողուցած է մեզ։

Զաւակն՝ Արգիստիս Ա. (Արմենակ = Արագած) աւելի մեծ աշխարհակալ մը կ'ըլլայ․ կը նուաճէ Փոքր Ասիոյ․ Ասորիքի մէկ մասն եւ նոյն իսկ Ասորեստանի սահմանն կ'անցնի։ Սաղմանասար Գ. (783-773) անոր արշաւներն յետս կը մղէ։ Արգիստիս Արմաւիրն նորոգելով զայն Արգիշտինիշի (Արագածոտն?) կամ Խալտինիշի (Խալդիաբերնակ) անուանեց եւ Արագած լերան իր անունն տուաւ (1)։

Սարդուրիս Բ. (Արամայիս?) յաջորդելով իր հօրն իր սահմաններն աւելի ընդլայնեց, եւ 'ի մէջ այլոց յ'Արեւմուտս Կապադովկիոյ Տէանիսիս (2) (Տիանիա) երկրին տիրեց։

Ասորեստանեայց Թագղաթ Փաղասար Գ. ի (745-727) վրայ դնաց․ յետս մղուելով հաշտուեցաւ (742), ապա Փոքր-Ասիոյ իշխանութեանց հետ դաշնակցելով (756)՝ կրկին յարձակեցաւ Ասորեստանեայց վրայ, ու յաղթուելով Տուշպա վերադարձաւ։ Ասորեստանեայն հետեւեցաւ անոր՝ ու զայն պաշարեց․ սակայն չի կրնալով գրաւել Տուշպան՝ դաշնակցութեամբ հաշտուեցաւ ու անդ արձանագրութիւններ թողլով դարձաւ։

Այս հինգ թագաւորներն յորդւոց որդի չուրջ դար մը (835-743) գրեթէ ազատ իշխեցին միշտ, յաջողապէս իրենց սահմաններն ընդլայնելով դէպի Արեւելք եւ Հիւսիս, Արեւմուտքէն դիմադրելով Քեթացւոց եւ Մալաթիացւոց ոտնձգութեանց, որպէս ցոյց տան Բալուի արձանագրութիւնք, եւ ինքզինքնին յարգել տալով հարաւի Ասորեստանեայց։

(1) «Ցանկագոյն յիւր անուն Արագած» անուանեց (Խորենացի)։

(2) Սա հաւանականաբար Աստղիկի գաւառին կամ այժմու Եըլտըզ-էլիին կը համապատասխանէ։

Այս վերջին երեք աշխարհակալ թագաւորաց գործքեր տարբական ձեւով յիշատակած է Խորենացին, զանոնք Մանաւազ, Արմենակ եւ Արամայիս անուանելով։

Սարիդուրիս Բ. ի յաջորդն Ռուսա կամ Ուրսա Ա. (Հրաչեայ՞) նախ դէպ արեւելք արշաւներ ըրաւ, 23 մանր իշխանութեանց տիրեց, իրեն ախոյեան կանգնեցաւ Ասորեստանեայց Սարկուքէն կամ Սարգոն (722-705) թագաւորն։ Ուրսա իր զօրաւոր թշնամւոյն կարենալ դիմադրելու համար՝ դաշնակցեցաւ Թուփիլի, Մոռքի, Մուսասիրի, Միլդիսի, Զիքառաթուի, եւ Ոմրիոյ շրջակայ երկրաց իշխանութեանց հետ։ Մաննայի Իրանզու թագաւորն՝ որ Սարգոնի դաշնակից ու հարկատու էր, մերժեց Ուրսայի առաջարկն։ Ուրսա Մաննայի մէջ յեղափոխութիւն հանել տուաւ, Իրանզուի երկու քաղաքներն իրենց գաներն Զիքառաթուի Միտատի թագաւորին աւջեւ բացին։ Սարգոն յօգնութիւն հասաւ իր դաշնակցին, այդ քաղաքներն ետ առաւ, ապստամբ բնակիչներն ի Սուրիա աքսորեց (719)։ Իրչ վերջ Իրանզու մեռաւ, զաւակին Ազա՝ Ուրսայի առաջարկն մերժելուն՝ Ուրսա զայն ապստամբութեան մը մէջ սպաննել տուաւ։ Ազաի յաջորդեց իր եղբայրն Ուլուսուն, սա հպատակեցաւ Ուրսայի, եւ անոր 22 ամուր տեղեր տուաւ։ Սարգոն զայն լսելով՝ Ուլուսունի վրայ գնաց, զայն հպատակեցուց, Ուրսայի դաշնակից Զիքառաթուի եւ Մելդիսի թագաւորաց յաղթեց, Ուլուսունի ներեց, ու զայն իր գահուն վրայ հաստատեց։ Կամէր եւ Ուրսայի վրայ երթալ՝ սակայն Ասորեստանեայց ապստամբութիւն մը զըսպելու համար՝ ետ դարձաւ։ Ուրսայի սախպման վրայ Ուլուսուն ապըստամբեցաւ, Սարգոն հարկադրուեցաւ դէպ Հիւսիս ելնել, իր ներկայութիւնն բաւեց Ուլուսունի հնազանդութիւնն ձեռք բերելու։ Հայրենասէրն Ուրսա միշտ իւր ծրագրոյն հետամուտ՝ Սարգոնի հեռանալուն՝ Ուլուսունը իրեն հպատակեցուց եւ զաւակն պատանդ առաւ։ Սարգոն ստիպուեցաւ մեծ բանակաւ Ուրսայի վրայ գալ․ ճակատեցաւ Ուրսայի եւ անոր դաշնակցաց հետ։ Ուրսա ամուր տեղեր ապաստանեցաւ, Սարգոն Մուսասիր մտաւ, տեղւոյն թագաւորն Ուրզանա (1) փախաւ, անոր ընտանիքն եւ չսա մարդիկ (20100) եւ քաղաքին մէջ գտնուած Խալ-

(1) Ուրզանայի կնիքն՝ Լահէի թանգարանին կը գտնուի։ Այս կնիքըն բթամատի հաստութեամբ երկար եւ գլանաձեւ սեւ քար մ'է, որոյ վրայ բեւեռագրեր ու պատկերներ կը գտնուին։ Պատկերն է թեւաւոր մարդ մը որ իր երկու ձեռքերով երկու թռչուններու վզէն բռնած է։ Արձանագրութեան թարգմանութիւնն է։

Կնիք Ուրզանայի
Արքային Մուսասիրի
եւ Նուսաբթի քաղաքի
վէմ բարի ոգւոյ
որու իբրեւ օձի
չար լեռներու մէջ
բերանը բաց է։

դիս (1) եւ Բագբարդում գից անդրիներն դերեց · Ուրսա զայս լսելով ինքզինքն սպաննեց (714) · Սարգոն Ուրսայի դաշնակիցներէն վրէժ լուծեց ։

Սարգոն Միլիտի կամ Մալաթիոյ թագաւորութիւնն կործանեց (712) , Թագաւորն գերեց եւ անդ Ասորեստանցի կառավարիչ մը դրաւ ։ Սարգոն կործանեց Կեթացիներու իշխանութիւնն , տիրեց անոնց Կարքէմիչ մայրաքաղաքին (717) եւ Ասորեստանի մաս ըրաւ զայն ։

Ուրսայի յաջորդեց իր եղբայրն Արգիստիս Բ · սա նախ հպատակեցաւ Ասորեստանեայց , սակայն սոյն ազատութեան դրօշ պարզելով ընդլայնեց իր սահմաններն եւ տիրեց Մաննայի ։ Սիննաքերիմայ (705-681) դեսպաններ յղեց հաշտութիւն կնքելու համար , ձիու նուէրներով ։ Հաւանականաբար Արեւմտեան իշխանութեանց ոտնձգութիւններն ու սպառնալիքներն սկսած էին հարաւի մեծ պետութեան բարեկամութեան պէտքն զգացնել ։

Ուրսա Բ. (Սկայորդի ?)ի օրով Սինեքերիմայ երկու կրտսեր զաւակներն Սարասար եւ Ադրամելէք՝ իրենց անդրանիկ եւ տարամայր գահաժառանգ եղբօր նախանձելով՝ այս վերջնոյն 'ի Միջագետս գտնուած ժամանակը՝ սպաննեցին իրենց հայրն ու Սարասար՝ հօրն աթոռը բազմեցաւ ։ Երէց եղբայրնին Ասուրդան կամ Ասուր-Հատտոն՝ ոճրի լուրն առնելուն դարձաւ , իր եղբարց հետ ճակատելով յաղթեց ու զայնս հալածեց ։ Հայրասպան եղբայրներն 'ի Հայս ապաստանեցան , Ասուրդան չ'յանդգնեցաւ սահմանագլուխն անցնելու , դարձաւ ու իր հօր աթոռն բազմեցաւ (Դ. Թագ. ԺԹ. 37) ։

Ասուրդանի օրով (681-668) Կիմմերեանք սկսած էին իր երկրի սահմաններն հասնիլ · Ասուրդան ճակատեցաւ , յաղթեց ու հալածեց զանոնք ։

Ուրսա Բ.ի յաջորդեց իր զաւակն Էրիմենա · սա որ եւ է արձանագրութիւն չ'ունի ։ Ասորեստանեայց բարեկամ կը թուի · հաւանականաբար սորա օրով տեղի ունեցած է 'ի Հայս արեւմուտքէն եկող կարեւոր գաղութն , զոր մենք փռիւգական կը համարինք , ինչպէս ըսինք ։ Սոքա հաւանականաբար Կեթացիներէն նեղուելով Ալիսի ակունքն եկած էին , ու անդ եւս 'ի Գամրաց հալածուելով 'ի Հայս եկան ապաստանիլ ։ Բնականաբար տեղական ժողովուրդն ընդդիմացաւ անոնց մուտք , ու բազմաթիւ ճակատամարտներ տեղի ունեցան ու ներքին յուզմանց պատճառ եղան այս եկերն , որով եւ երկրի կառավարութեան զօրութիւնն տկարացաւ ։ Իրաց այս վիճակի մէջ կը բացատրուի Էրիմենայի որ եւ է արձանագրութիւն չ'թողուլն ։

Ուրսա Գ. կը յաջորդէ Էրիմենայի , սա մեհեաններ եւ պալատներ կը շինէ , որ նշան մ'է թէ յուզմունք դադար գտած են , ու երկրի

(1) Կ'երեւայ թէ Խալդեանց ժամանակ որպէս եւ կռապաշտ Արշակունեանց դարերուն Տարօնն (Մուսասիր) կրօնական մեծ կեդրոն մ'էր եւ այդպէս մնաց իսկ ի Քրիստոնէութեան ։

իշխանն պէտք զգացած է նորեկ տարրի գալստեամբ յառաջ եկած աւերակներն վերականգնել ու երկիրն շէնցնել։

Ուրսա Գ. Ասորեստանեայց Ասուր-Բանի Բալ (Սարդանապաղ Բ.) արքային դեսպանութիւն ղրկելով (668) կը դաշնակցի։ Սա ցոյց տայ թէ դեռ ակար էր իր երկրի կառավարութիւնն եւ Ասորեստանեայց օժանդակութեան կը կարօտէր։

Այս առենները Մաննայի Ախսիրի Թագաւորն ապստամբեցաւ Ասուր Բանիբալայ դէմ, սակայն չարաչար յաղթուելով ամուր տեղեր ապաստանեցաւ։ Ասուր Բանիբալ երկիրն անտէր գտնելով հիմնայատակ քանդեց զայն ու հեռացաւ։ Ախսիրի երեւան ելնելուն՝ ժողովուրդն զայն սպաննեց, եւ զաւակն Ուալլի անոր տեղն դրաւ։ Մաննացիք Ասորեստանցւոց գործած անգթութեանց համար արհամարհանք սկսան մշակել անոնց դէմ։

Ուրսա Գ.ի յաջորդն Սարիդուրիս Գ. իր հօր քաղաքականութեան հետեւեցաւ, հաշտ գնաց Ասորեստանեայց, եւ ընծայներ ղրկեց Ասուր Բանիբալի։ Սորա օրով սկիւթացի Շակաց հեղեղատ մը կը ծածկէ համայն Արեւմտեան Ասիան։ Հարկ է կանգ առնել աստ ու ներկայել զանոնք ու իրենց աւերներն։

Ը. դարուն սկիւթական (1) Շակ ցեղէն գաղութ մը հաստատուած կը գտնեմք Հայաստանի հիւսիսակողմը Աքսոսի հովիտներէն եկած, եւ որք անդ զօրանալով մի իշխանութիւն կը հաստատեն, իրենց գաւառն՝ Գոգ անուն Թագաւորի անուամբ Գուգարք (Գուգայ-արք) անուանեցաւ,

---

(1) Սկիւթիան այսօրուան Ռումանիոյ եւ Փամիրի միջեւ ձգուած եւ սեւ ծովէն 20 օրուան ճամբայ դէպ հիւսիս տարածուող երկիր մ'է։ Երեք գլխաւոր ցեղերու կը բաժնուէին. Սկօլօթներն՝ Արեւմտեան կողմը, Շակերը՝ յ'Արեւելս, իսկ Սաւրօմաթներն՝ երկուքին միջեւ։ Սկիւթացիք իրանական ժողովուրդ մ'էին եւ ոչ թէ Մոնկոլ։ Կարճահասակ եւ մազոտ էին։ Ըստ Հերոդոտի, թափառական ժողովուրդներ են սոքա. առանց հաստատուն բնակութեան, եւ տեղւոյ մը մարգագետնին սպառմամբ այլուր կը տեղափոխուէին։ Չորս կամ վեց անւով կառքերու մէջ կը բնակէին ուր 2-3 սենեակներ կը շինէին, եւ որոնք 2-3 զոյգ եզերով կը ձգուէին։ Տեղափոխութեան առեն կանայք եւ տղայք կառքերու մէջ կը մնային, իսկ այրերն ձի նստած՝ իրենց ոչխարաց երամներն կ'առաջնորդէին։ Լաւ ձի կը նստէին, քաջ որսորդ եւ պատերազմիկ էին։ Թշնամւոյն գանկով գինի կը խմէին; ու անոնց մազերն իրենց ձիոց թամբին վրայ կը հաստատէին։ Գլխաւոր ուտեստնին էր եփած միս, ձիու կաթ եւ այդ կաթով պատրաստուած պանիր։ Մեռելոց մարմինն ժողովրդեան մէջ կը պտտցնէին. Թագաւորինն զմռսելէ ետքը օրերով երկրին մէջ շրջան ընել կուտային, այդ առթիւ խրախճանութիւններ կ'ընէին, ձիեր կը զոհէին, եւ նոյն իսկ ժողովրդէն ոմանք իրենց քիթն, ականջն, մատն եւն. կը կտրատէին. վերջապէս քառանկիւնի գերեզմաններու մէջ կը թաղէին. իր կիներէ միոյն հետ շատ մը ծառաներ եւ ձիեր ալ կը զոհէին գերեզմանի վրայ։ Մահուան տարեդարձին 50 ծառաներ եւս կը զոհէին։

*դրացի մի այլ Շախարնակ գաւառ Ծակաշէն բռնեցաւ (Սորաքոն)։ Հայաստանի հիւսիսակողման Շակերն 660ին կը պատրաստուէին դէպ ի հարաւ արշաւել, Աստր Բանիրաղ անոնց վրայ գնաց, ու անոնց Գագու կամ Գոգ թագաւորին յաղթեց ու անոր երկու զաւակներն (Սարատի եւ Պարիարոս) սպաննեց։*

*Սկիւթացիք շուրջ 20 տարիներ վերջ իրենց ցեղակից եւ նմանապէս Աքսոսի հովիտէն եկող անազին զաղութի մը հետ միացած՝ ու անոնց Մատիէս թագաւորին առաջնորդութեամբ՝ Հայաստանը ողողեցին (635), եւ Ասորեստանի վրայ սկսան երթալ (1) երբ Կիաքսար իր հօր՝ Փրաւորդի՝ վրէժը լուծելու համար Մարացի, Մաննացի (2) եւ Գամիրցի վարձկան զօրքերով Նինուէն պաշարելու վրայ էր։ Կիաքսար զայս լսելով պաշարումի թողուց եւ Սկիւթացւոց դէմ ելաւ, յաղթուեցաւ ու հարկատուութիւն խոստանալով Մարաստան քաշուեցաւ (634)։ Սկիւթացիք տիրեցին Ասորեստանեայց, սակայն չ'կրցին առնել Նինուէն, Փոքր Ասիա տարածուեցան, տիրեցին տեղական իշխանութեանց Թօշ, Մոսոք, Թաբէլ երկրաց, զարնուեցան Գամրաց հետ, յաղթեցին անոնց Բոպոս թագաւորին, ու հետեւնին խառնուելով՝ տիրեցին Միջագետաց, Սուրիոյ, Փիւնիկոյ, Դամասկոսի եւ Պաղեստինի (628) եւ վերջապէս Եգիպտոսի վրայ գնացին, որոց Պսամեթիքոս թագաւորն՝ ընծայներով ընդ յառաջ ելաւ, ու ետ դարձուց զայնս։ Արշաւողներն Փռիւգիացւոց վրայ գացին, Ասքալոնի մօտ Տէրքէթոյի տաճարն կողոպտեցին, ու այլ եւս սկսան տկարանալ։ Վերջապէս Կիաքսար պատերազմելով կռուեցաւ, ու յաղթելով վանեց զանոնք, որք ըստ Հերոդոտի Կովկասի ճամբով Եւրոպա մտան 8 տարի (634-627) Ասիան ապատակելէ ետք։ (Երեմիա Գլ. Ա. Դ. Ե. Զ, եւ Եզեկիէլ ԼԸ. եւ ԼԹ)։*

*Կիաքսար Սկիւթացիներն հալածելէ ետք՝ իր ծրագիրն ձեռք առաւ, ու Բաբելացւոց եւ ըստ Խորենացւոյն՝ եւ Հայոց Պարոյր իշխանի զօրաց օժանդակութեամբ՝ Նինուէի վրայ գնաց, զայն առաւ (608) ու կոր-*

---

*Սկիւթացիք բազմաստուածեան էին, սակայն ոչ տաճար ունէին եւ ոչ արձան կամ պատկեր։ Գլխաւոր աստուածութիւննին պատերազմի Առէս աստուածն էր, զոր կանգնուած սուրի մը ձեւին տակ կը պաշտէին, եւ որոյ ձիեր եւ մարդիկ իսկ կը զոհէին (ընդհանրապէս 100 բանտարկեալներէ մին), նախ անոր բազուկներն կտրելով՝ արիւնով նուիրական սուրն կօծէին։ Հուրն եւ տարրերն ալ կը պաշտէին, կախարդներն մեծ յարգ ունէին։ Սեոստրիս տիրած է Սկիւթացւոց։ Տեսանք թէ Սլոլօտներն հալածեցին Կիմմերեաններն՝ որք ապա Ասիա անցան, [illegible]։ 7րդ դարուն Արեւմտեան Ասիան ծածկեցին ժամանակ մը ու հեռացան։ Դարեհ 513ին անոնց վրայ երթալով՝ փախան ու մեծ վնաս պատճառեցին։ Աքիմենեանք անոնց դաշնակցեցան, Աղեքսանդրի մի բանակ կոտորեցին։*

*(1) Երեմիա եւ Եզեկիէլ մարգարէութիւններ ունին ասոնց մասին։*

*(2) Ասքա անչուշտ Ասուր Բանի Բալէ կրածնուն վրէժն առնելու համար կ'աջակցէին Ասորեստանեայց։*

ծանեց, եւ Հայաստան Մարաց լուծին տակ մտաւ։ Գուցէ ունենալով իր ուրոյն իշխանն Պարոյր՝ որ Սարիդուրիս Դ.ի յաջորդն ըլլալ կը թուի եւ գուցէ Կիաքսար ընդդէմ Նինուէի իրեն օժանդակելուն՝ անոր արքայական թագ տուաւ (Խորենացի)։

Մարք տիրեցին համայն Փոքր Ասիոյ, Կապադովկիա անուանեցին Գամրաց երկիրն․ միայն Լիւդիացիք կրցան վեց տարի դիմադրել, որոնց հետ վերջապէս Կիաքսար հաշտութիւն կնքելով (585)՝ Ալիս գետն սահմանագլուխ որոշուեցաւ երկու տէրութեանց միջեւ։ Յաջորդ տարին Կիաքսար մեռաւ։

Այլ եւս արձանագրական եւ օտար ժամանակակից պատմչաց կողմանէ յիշատակութիւններ չ'ունենալով՝ մեր պատմահօր Խորենացւոյ եւ մասամբ ալ Քսենոփոնի հեղինակութեամբ կը գծեմք հաւանական պատմութիւնն։

Պարոյրի յաջորդ Հրաչեի մը գոյութիւնն եւ սորա Նաբուգոդոնոսորի աջակցելով Երուսաղէմի գրաւումն (588) եւ իր յաջորդներն կարելի չ'է դրապէս ընդունիլ․ սակայն հաւանականաբար ունեցած եմք Երուանդ մը՝ (Քսենոփոն) Կիաքսարի յաջորդ Աժդահակայ (584-558) ժամանակակից, որ ապստամբեցաւ եւ պաշարուելով յանձն առաւ հպատակութիւնն եւ տարեկան 50 տաղանդի տուրքի վճարումն, ու իր զօրքամբ պիտի օգնէր Աժդահակայ եւ ամրոց չի պիտի ունենար։

Երուանդ Կիաքսար Բ.ի (558-536) օրով կրկին ապստամբեցաւ։ Յաջորդն Կիւրոս (560-529) զայն կրկին հպատակեցուց եւ որ Կիւրոսի՝ ընդդէմ Լիւդացւոց պատերազմին՝ 20,000 հետեւակ զօրք տուաւ. (546) իր Տիգրան որդւոյն առաջնորդութեամբ (Քսենոփոն)։

Կիւրոս, Պարսիկ կայսրութեան հիմնադիրն, Բաբելոնի վրայ գնաց աջակցութեամբ Արարատայ, Մինւոյ եւ Ասքանազայ (1) թագաւորութեանց (Եսայի ԽԵ. Երեմիա ԾԱ.) (538) եւ Երուանդի որդւոյն Տիգրանայ առաջնորդութեամբ։ Անշուշտ այս երկրաց իշխաններն՝ որպէս իրենց պետն Երուանդ հպատակ հարկատու էր Կիւրոսի, եւ պարտաւոր անոր օժանդակելու։

Տիգրան եղած է իր հօրն արժանաւոր յաջորդ, եւ որ ըստ Խորենացւոյ Աժդահակայ յաղթած է։

Տիգրանայ զաւակն Վահագն ապստամբեցաւ Դարեհ Ա.յ (521 485) դէմ․ Դարեհ Դադարշիշ անուն հայ զօրավարն ղրկեց անոր դէմ (519)․ Վահագն երիցս յաղթեց պարսիկ բանակին եւ սկսաւ Բաբելոնի վրայ քալել․ Դարեհ Վաւմիսա անուն մի պարսիկ զօրավարի հրամանատարութեամբ աւելի զօրաւոր բանակ մը ղրկելով՝ հեռացուց զանոնք (518) եւ

(1) Աշքուզա = Աշքանազ = Ասքանազ՝ Միննիի մօտ փոքր իշխանութիւն մ'է՝ ըստ Բասմաջեանի։

*զՀայաստան իր կայսրութեան 18րդ նահանգն ըրաւ, եւ տարեկան 300 տաղանդ արծաթի եւ 20000 ձիու տուրք դրաւ։ Դարեհ ստիպուեցաւ քանիցս զսպել զՀայս որպէս ցոյց տան իր արձանագրութիւնք։*

*Դարեհ Վշտասպեանի օրով Արախի անուն հայ մը իբր Նաբուգոդոնոսոր Բաբելոնի աթոռն կ'ելնէ (513) ու Դարեհի կը դիմադրէ, ու վերջապէս իր համախոհներով կը բռնուի ու կը խաչուի։*

*Դարեհի կը յաջորդէ Քսերքսէս (485-465) որ Հայաստանն իր լուծին տակ կը պահէ եւ Վանայ քարաժայռից վրայ եռալեզուեան (Պարսիկ, Մարական եւ Բաբելական) արձանագրութիւնք փորագրել տալով՝ պատմէ իր գործքերն։*

*Հաւանականաբար այս ատեններն Հայաստանի հիւսիսային արեւելեան կողմն՝ Երասխի եւ Կուրի հովտաց միջեւ՝ կար եւ ազգային իշխաններով կառավարուող երկիր մը, որոյ վարիչներն ըլլալու են Խորենացւոյ տուած Թագաւորաց շարքն, Վահագնէն մինչեւ Վան, եւ որք հաւանականաբար Պարսից հպատակ էին։*

*Յաւուրս Քսենոփոնի Հայաստանէ անցից (401), Հայաստան կը բաժնուէր երկու մասանց՝ Արեւելեանին կուսակալն էր Որոնդաս, իսկ Արեւմտեանինն Տիրիբազ։*

*Խորենացւոյ տուած արքայից շարից վերջընթերն՝ Վան, ըստ մեր պատմահօր, նորոգած է Տոսպան՝ ու իր անուամբ Վան անուանած է զայն· իսկ վերջինն Վահէ իր բանակաւ Դարեհ Կոդոմանոսի օգնութեան գնաց Աղեքսանդրի դէմ պատերազմին. եւ անդ ի մարտին անկաւ (331), եւ Հայաստան Մակեդոնական կայսրութեան մի նահանգն եղաւ։*

*Աղեքսանդր անդ՝ Միհրան անուն հայազգի մը՝ կառավարիչ կը դնէ, սակայն իր մահուանէն վերջ (323)՝ կայսրութիւնն բաժնուելով Հայաստան Սելեւկեանց բաժին կ'իյնայ, եւ անդ կը ղրկուի Նէոպտողեմէոս զօրավարն։ Սա ժողովուրդն չատ նեղելուն դժգոհութիւններ յարոյց, Արդուարդ հայ իշխանն զայն վռնտելով՝ ինքն անոր տեղ կառավարիչ եղաւ։*

*Մեծն Անտիոքոս (222-186) գահն ելնելուն Հայաստանն երկուքի բաժնեց, մին կը պարունակէր Վիրին եւ Արեւելեան Հայքն՝ որ Արտաքսիաս (Արտաշէս) հայ զօրավարին յանձնուեցաւ, իսկ միւսն որ կը համապատասխանէր արեւմտեան եւ հարաւային մասին կամ Ծոփաց աշխարհին՝ Զարիադէսի (Զարեհ) կառավարութեան յանձնուեցաւ։ Յետ մեծն Անտիոքոսի պարտութեան՝ սոքա ինքզինքնին թագաւոր հռչակեցին (188) Հռովմայեցւոց օգնութեամբ (Սարարոն)։*

*Արտաքսիաս դաշնակցեցաւ (180) Փոքր Ասիոյ փոքր իշխանութեանց (Պերգամա, Բիւթանիա, Գաղատիա, Կապադովկիա, Պոնտոս) հետ, եւ Զարիադէսի յաջորդ Արտանէսն սպաննելով՝ անոր երկրին ալ տէրեց եւ Հայաստանի թագաւոր հռչակուեցաւ։*

Յետ սորա մահուան իր որդին Մեղկն Արտաւազդ հօրն յաջորդեց, սակայն ժողովուրդն գոհ չ'մնալով՝ եւ Սելեւկեանց իշխանութիւնն ալ տկարացած ըլլալով՝ հայ նախարարաց հրաւիրանօք Պարթեւք (1) տիրեցին Հայաստանի (160), եւ հիմնեցին Արշակունի հարստութիւնն։ Արշակ Մեծի եղբայրն Վաղարշակ եղաւ առաջին Արշակունի հայ թագաւորն։

Երբ Վաղարշակ մտաւ 'ի Հայս՝ Բագարատ Փառադեան նախարարն՝ ընդ յառաջ ելաւ, ու անոր գլուխն թագ դրաւ եւ արքայական ոսկեհուռ գահի վրայ նստեցուց զայն (Սեբէոս)։



(1) Պարթեւք ընդմէջ Մարաստանի եւ Արեաց հաստատեալ Սկիւթացի ցեղ մ'էին, երկիրն համապատասխանելով այսօրուան Խորասանին։ Պարթեւք Պարսից իշխանութեան տակ անցան, ապա Մակեդոնացւոց, եւ յետ մեծին Աղեքսանդրի՝ Սելեւկեանց։ 250 (Ն. Ք.) ապստամբելով՝ իրենց պետերէ մին Արշակ հիմնեց Պարթեւ թագաւորութիւնն. զօրացան, տիրեցին Մարաց, Պարսից, Բաբելոնի, Սուրիոյ եւ Հայոց (160), իրենց կայսրութիւնն Եփրատէ մինչ ց'Հնդոս կը ձգուէր։ Քրիստոսէ կէս դար առաջ սկսան չափուիլ Հռովմայեցւոց հետ, նախ յաղթեցին, սակայն ապա յաղթուելով տկարացան շարունակական պատերազմներով, եւ վերջապէս Պարսից Սասանեան իշխանութեան հիմնադիր Արտաշիրէն յաղթուելով (226) Պարթեւ հարստութիւնն վերջ գտաւ։

Պարթեւք յունասէր էին, յոյն լեզուն կը մշակէին, արքայք յունական տիտղոսներ կը կրէին. Յոյն գաղութներն կը նպաստաւորէին իբր քաղաքակրթիչ տարր։ Աղաւաղեալ Մազդէականութիւն մ'էր կրօնքնին, ըստ օրինակի յունաց աստուածոց՝ արձաններ կը շինէին։

Գ.

Այս Հայկազեան շրջանն որ 'ի սկզբանէ մինչ Արշակունի Հարստութեան սկզբնաւորութիւնն կ'երկարի, վեց որոշ ժամանակամիջոցներու կը բաժնուի։

Ա. Նախնական ժամանակ. — Որ կ'երկարի 'ի սկզբանէ մինչ ԺԶ. դարն (Ն. Ք.)։ այսինքն Եգիպտացւոց տիրապետութիւնն։ Այս ժամանակամիջոցին տեղական ժողովրդեան վրայ օտար տարրն ազդած ըլլալ չի թուիր։ Այս շրջանի քաղաքակրթութեան մասին որ եւ է որոշ գաղափար չ'ունինք։ Հաւանականաբար ժողովրդեան կրօնն էր Բնապաշտութիւն եւ գուցէ նորա ամենէն միամիտ ձեւն Տարրապաշտութիւն որպէս այլ նախնական ժողովրդոց համար։ Չեմք կարծեր որ այս շրջանի մէջ գրի եւ գրականութեան վրայ գաղափար ունեցած ըլլան։ Երկիրն իր աշխարհագրական բաժանման հետեւանօք խել մը փոքր իշխանութեանց բաժնուած էր։

Բ. Եգիպտական տիրապետութեան ժամանակ. — Ինչպէս 'ի պատմութեան տեսանք՝ դար մը միայն տեւեց սա, ԺԶ. էն ԺԵ. դար (1440)։ Այդ ատեններն Եգիպտացիք արդէն բաւական յառաջացեալ քաղաքակրթութիւն մ'ունէին, եւ կարելի չ'է որ անոնց տիրապետութիւնն որ եւ է հետք թողուցած չլինի 'ի մեզ։

Անոնց ժամանակէն մնացած է անշուշտ մեր տարուան բաժանման եւ աստեղագիտական առաջին հմտութիւնն որ մնացած է նոյնութեամբ ճիշտ անոնցինին նման։ Բացատրեմ.

Եգիպտացիք տարին 360 օր կը հաշուէին. 30 օրուան 12 ամիսներ, ապա սկսան 5 աւելեաց օրեր ալ ընդունիլ. սակայն զգալով թէ՝ արեգակնային տարին 1/4 օր աւելի է՝ որով 4 տարին մէկ օր եւ 1460 տարին՝ մէկ տարի տարբերութիւն յառաջ կուգայ, ընդունեցին 1460 տարուան շրջան մը՝ զոր Սոթական կամ Շնիկ աստեղ շրջան կ'անուանէին։ Հայք ալ կ'ընդունէին 30 օրուան 12 ամիս, 5 աւելեաց օրեր եւ 1460 տարուան յար եւ նման շրջան մը՝ զոր իրենց նախահօր Հայկայ նուիրեալ համաստեղութեան (Հայկ) անուամբ՝ Հայկայ շրջան անուանեցին, որ 'ի գործածութեան է ցարդ։

Գարեջուրն ծանօթ էր Եգիպտացւոց եւ իբր դեղ կը գործածուէր, յորոց ուսան եւ Հայք հաւանականաբար, եւ զոր Քրիստոսէ 4 դար առաջ Քսենոփոնի անցից ատեն (401) դիտէին պատրաստել։

Համանմանաբար եւ Կենդանապաշտութիւնն (1) , որոյ հետքեր կը տեսնուին 'ի մեզ . Եգիպտացւոց օրերէն մնացած է ։ Գուցէ նշանագրերով գրականութիւն մ'ալ մուտք գտած է յայնժամ ի մեզ ըստ Եգիպտականին , սակայն անկէ որ եւ է հետք ծանօթ չ'է մեզ ։

Գ. Ասորեստանեայց ազդեցութեան ժամանակ. — Սա կը սկսի ԺԵ. դարէն եւ վերջ կը գտնէ Նինուէի կործանման հետ եւ կամ աւելի ճիշտըն Փռիւգական ցեղի գալուստն (675 ?) ։ Այս գրեթէ 8 դարերու երկար ժամանակամիջոցն Հայք սերտ առնչութիւն ունեցած են Ասորեստանեայց հետ , ինչպէս տեսանք . եւ առոնցմէ մեծապէս ազդուած ։

Այս յարաբերութիւնք սերտ չ'էին մինչ Թ. դարն կամ Արամէ (860 ?) եւ միայն Նաիրիի հարաւային նահանգին հետ էր առնչութիւննին , որ առէջ հարկատու եւ հպատակ էր Ասորեստանեայց , հակառակ իր պարբերական ապստամբութեանց ։ Արամէի հաստատած դաշնակցական միութեան առթիւ՝ Ասորեստանեայք գրգռուելով՝ բազմիցս արշաւեցին եւ ջանացին հնազանդեցնել / լուծն արհամարհող Խալդեաններն , եւ վերջապէս կը քանդեն Ուրարդեան հարստութիւնն , սակայն Արգիշտիս Ա. ի հիմնած Բիայնական իշխանութիւնն գրեթէ շուրջ դար մը (835—730) ազատ կը մնայ , ու կ'ընդլայնի , սակայն հայրենասէրն Ուրսա իր տխրական Սարգոնի զինու զօրութեան առջեւ կ'ընկ[ճի] (714) ։ — Իր յաջորդներն բարեկամ կը մնան Ասորեստանեայց, զի փոքր Ասիոյ ժողովուրդք եռուզեռ վիճակի մէջ էին եւ վտանգ կը սպառնային ։ Վերջապէս Երիմէնիի օրով (675 ?) Փռիւգական ցեղ մը նեղուելով իր դրացի ժողովուրդներէն՝ կուգայ հաստատուիլ 'ի Հայս եւ նոր շրջան մը կը սկսի ։

Այս ութ դարերու շրջանին՝ Ասորեստանեայք զարգացեալ քաղաքակրթութիւն մ'ունէին, եւ որք իրենց կրօնիւ , լեզուաւ , դրականութեամբ ու արուեստներով մեծապէս ազդեցին մեր նախահարց վրայ ։

Կրօնն խոր ազդեցութիւն գործած կը թուի , զի 'ի Հայս կը հաստատեմք այս շրջանին մէջ գրեթէ Ասորեստանեայցինին նման աստուածութիւնք ։ Արդարեւ Ասորա-քաղդէական աստուածութեան բարձրագոյն երրորդութիւնն կը տեսնուի 'ի մեզ ։ Անոնց Սինն որ լուսնի ներկայացուցիչն էր եւ այդ երրորդութեան հզօրագոյնն՝ 'ի Հայս Խալդի կ'անուանուի , Շամաշն կամ Արեգակ Աստուածն՝ Արտինի կ'ըսուի. Ռամանու մթնոլորտի եւ անդ տեղի ունեցած երեւութից Աստուածն՝ ի մեզ Տէիշբաս անունն կ'առնէ . միայն անուններն կը փոխուին , սակայն անոնց միեւնոյն յատկութիւններն կը վերագրուի ։

Համանմանաբար Նախահայք՝ այս բարձրագոյն երրորդութեան յաջորդող 5 մոլորակաց պաշտպան հինգ աստուածութեանց խումբն ալ

(1) Տես Հին հաւատք Հայոց ։

ընդունուած էին ։ Անոնք որոշապէս յայտնի չ'են մեզ․ սակայն անոնց-մէ միայն Մարդուկ կամ Մերոդակ՝ որ Լուսնթագի պաշտպանն էր՝ այս մոլորակի 4 արբանեակներն (1) ներկայացնող 4 հետեւորդ շուներ ու-նէր, որք «կենդանացուցիչ դիակաց» կ'անուանէին, եւ սոքա համա-նականաբար մեր պատմագրաց Յարալէզներուն կը համապատասխանեն (Լանգլուա․ Բասմաջեան)։

Ասորեստանեայք այս գլխաւոր աստուածութիւններէ զատ պաշտէ-ին եւ շատ մը երկրորդական աստուածութիւններ, կէս-աստուածներ, առանց հաշուելու բարի եւ չար ոգիներն։

Խալդեան արձանագրութեանց մէջ յիշատակեալ Աուիս, Այաս, Սըլարդիս, Ատառուսաս, Խառուպէնիս, Իսմաշինիս, Բագբարտում եւն․ աստուածութիւններն, եւ Շամիս գիցուհին համանականաբար Ասո-րաքաղդէական աստուածութեանց ներկայացուցիչներն են, որոց մասին դեռ ներելի չ'է որոշ բան մ'ըսել։

Նախահայք ալ ունէին անշուշտ կէս-աստուածութիւններ եւ հա-ւատային բարի եւ չար ոգիներու, որոց յիշատակութիւնն կը տեսնեմք նոյն իսկ քրիստոնէական դարերու մէջ։

Խալդիս աստուածն պահանջէր 70 եզի եւ 34 ոչխարաց զոհ։ Յաղ-թութեանց աւարներէն, աստուածոց եւ տաճարաց Խալդիի բաժին կը հանէին։ Արգիշտիս Ա․ Մանեայեւոց յաղթելով աւարի 1/6ն Խալդիի նուիրեց։

Այսչափ զարգացում չփում ունեցող ազգեր բնականաբար 'ի միմեանց փոխադարձաբար բառեր կ'որդեգրէին, եւ եթէ մեզ ծանօթ ըլլար Նա-խահայոց բարբառն՝ անշուշտ անոնց մէջ Ասորեստանեան լեզուէ առն-ուած բառերու ստուար թիւ մը պիտի գտնէինք․ նոյն իսկ մեր այժմու լեզուն ալ՝ որ անշուշտ մեծ խնամութիւն ունի Նախահայոց բարբառին հետ՝ իր մէջ ունենալու է կարգ մը Ասորեստանեան բառեր՝ զորս ապա-գայ բանասիրութիւնն երեւան կրնայ հանել։ Յիշատակեմք առ այժմ Հիւբշմանի եւ այլոց ցոյց տուած մի քանի բառերն, ինչպէս՝ kunuk-ku = կնիք, qubu = գուբ, kammakhu = կմախք, sakan = իշխան, pataru = պատառել։ Իսկ քերականական փոխառութիւն կամ նմանու-թիւն կրնանք ըսել թէ՝ մեր նախահայք Ասորեստանեայց լեզուի ուղ-ղականի, հայցականի եւ յոգնակիի մասնիկներն կը գործածէին։

Նախահայք նախ քան 9րդ դարն որ եւ է գիր եւ գրականութիւն ունեցած ըլլալ չ'են թուիր, այդ դարուն իրենց դրացի զարգացեալ ազգին՝ Ասորեստանեայց՝ սեպաձեւ գրերն (2) (որք աւելի սեպաձեւ գրե-

---

(1) Սա ցոյց տայ թէ՝ Լուսնթագի արբանեակներն յառաջ քան զԳալիլէ (1610) ծանօթ էին Քաղդէացւոց եւ Ասորեստանեայց։

(2) Մարդիկ նախ պատկերներով կը յայտնէին իրենց գաղափար-ներն․ ա՛յս եղած է կեդրոնական Ամերիկայի վաղեմի ժողովրդոց գրու-

րու խմբումներ էին եւ բառեր ու գաղափարներ կը ներկայացնէին) առին եւ ապա ձայնս իրենց լեզուի յարմարցուցին ։

Ասորեստանցի աշխարհակալք իրենց պալատանց եւ երկրի ու միրած երկրաց ապառաժից վրայ կ'արձանագրէին՝ այս սեպաձեւ գրերով՝ իրենց գործքերն եւ յաղթութիւններն ։ Ի Հայկազն Թագաւորաց Սարդուրիս Ա. սկսաւ իր գործոց պատմութիւնն դրոշմել Քիանայի ապառաժից վրայ , միեւնոյն գրերով եւ լեզուաւ (1) ։ Իր յաջորդ Իշպուինիսի օրով այդ սեպաձեւ գրերն իրենց լեզուի յարմարցուցին , եւ ունեցան սեպաձեւ գրերով ուրոյն գրականութիւն մը՝ փոխ առնելով սակայն Ասորեստանեայց ուղղականն , հոլովականն , եւ յոգնակիի մասնիկներն , գաղափարանիշերն (2) , խորհրդանիշերն , անփծից ձեւերն եւն ։ Այսօր Հայաստանի նամանաւանդ Վանայ շրջականերն , Հարաւային երկիրներն եւ Երասխի ու Կուրի հովիտներն լի են այս արձանագրութեամբք ։ Այս սեպաձեւ գրերով գրականութիւնն կը հասնի մինչ Սկիւթական արշաւանքն ու Կիաքսար , ուստի եւ այս գրականութիւնն ի մեզ ճիշդ 2 դարու (835 — 635) կեանք ունեցած է ։

Նոյն տառերն վերջ գտած են եւ Ասորեստանեայց լեզուօք սեպաձեւ արձանագրութիւնք . երկու դարու ալ կեանք ունեցած են Բաբելականք եւ Շուշականք . սակայն Պարսիկք որ այս վանկային եւ գաղափարանիշային գրութիւնն պարզելով տառական արժէք տուած էին անոնց՝ գործածեցին մինչ Ք'րիստոնէութեան Ա. դարն , յորժամ փիւնիկ տառերն վանեցին զայնս եւ անոնց յաջորդեցին , ուստի եւ սեպաձեւ գրութիւնն մոռցուեցաւ ։

Գիտունք յաջողեցան Պարսից սեպաձեւ արձանագրութիւններն կարդալ 19րդ դարուն սկիզբներն , սակայն կէս դար ետք միայն յաջո-

---

թեան եղանակն . այդ եղանակաւ ամբողջ պատմութիւններ թողած են նախնի Մեքսիկացիք ։ Դորա մի տեսակն կրնայ համարուիլ հին Եգիպտացւոց գաղափարանիշերով եւ խորհրդանշաններով գրականութիւնն ։ Ասորաբաբելական ժողովուրդք որդեգրեցին այս գրելակերպն եւ աւելի գործնական ձեւ մը տալով՝ գծերով կը ներկայացնէին գաղափարանիշերու եւ խորհրդանիշերու շրջանակներն (նախնական վիճակ), որոյ յաջորդեց՝ կրկին միեւնոյն ժողովրդեան մէջ՝ այդ գծերու զամի ձեւ տալով գրութիւնն, որ բուն սեպաձեւ գրութիւնն կը ներկայացնէ ։ Այս սեպախմբումներու մէջ դեռ կը տեսնուի պատկերի ձեւերն եւ գաղափարանիշերն ։

Այս գրութեան մէջ կայ 400 տառեր կամ վանկեր , որոց ոմանք մի քանի տեսակ կը կարդացուին, առանցմէ զուրս են գաղափարանիշերն ։

(1) Սա ապացոյց մը կրնայ համարուիլ Ասորեստանեայց լեզուի եւ գրերու եթէ ոչ ժողովրդեան ընդհանրութեան՝ գոնէ մասնաւորաց (զարգացելոց) կողմանէ հասկանալիութեան , իբրեւ ժամանակի քաղաքակրթութեան լեզուն , ապա թէ ոչ աննպատակ եղած պիտի ըլլային այդ արձանագրութիւնք ։

(2) Զոր օրինակ՝ աստուածորդի , թագաւոր , մարդ , տուն բառերու համար միեւնոյն նշանն կը գործածէին ։

դեցան Ասորեստանեայց, Բաբելաստանի, Շոշաստանի եւ Մարաստանի արձանագրութիւններն լուծել, իսկ Հայկականներն 1880է 'ի վեր միայն կը կարդան (1)։ Լեզուն անհասկնալի է, սակայն կը կռահուի շնորհիւ յԱսորեստանեայց փոխ առնուած խորհրդանիշերու, գաղափարանիշերու, անիծից ձեւերու եւ մի քանի Խալդեան բառերու որոց ցուցակն հարստանալու վրայ է։

---

(1) Ի վերջ կոյս ԺԸ. դարու մի քանի հնասէր գիտունք իրենց ուշն կը դարձնէին սեպաձեւ գրովք արձանագրութեանց վրայ, եւ քանի մը անյաջող փորձերէ ետք՝ Կռօթրֆէնտ 1802ին յաջողեցաւ ճանաչել Պարսիկ սեպաձեւ գրերու այբբենարանն, զոր կատարելագործեց Եօժէն Պիւռնուֆ ֆրանսացին 1836ին, եւ քանի մը տարի վերջ Հանրի Ռաւլինսըն անգղիացին Աքիմենեան արձանագրութեանց ընթերցման ամէն նրբութիւններուն ծանօթ էր։ Նինուէի աւերակաց 'ի ձեռն Պօթա ֆրանսացւոյն գիւտն (1846), Գօյունճուղի եւ Խօրսապատի պեղումներն եւ յաջորդ տարիներու Լէյարդ անգղիացւոյն Նեմրուդի բլրին վրայ Գալաղ քաղաքի աւերակաց գիւտն, եւ Գօյունճուղի պեղմանց շարունակութիւնն՝ շատ մը արձանագրութիւններ յ'երեւան հանեցին՝ որոց ընթերցման իբր բանալի ծառայեց եռալեզուեան (պարսիկ, բաբելական եւ շոշական) արձանագրութիւն մը. եւ այսպէս քիչ տարիէն կարդացուեցան բոլոր ծանօթ Բաբելական, Ասորեստանեան, Շոշական ու Մարական արձանագրութիւններն, որոց քերականութիւնն ու բառարանն իսկ պատրաստուեցաւ։

Իսկ գալով հայկականաց՝ զորս խալդեան եւ կամ վանեան կ'անուանեն, որքա դարուս սկիզբն սկսան հրաւիրել գիտնոց ուշն, Ֆրանսական կառավարութիւնն 1828ին իւր ծախիւք Շուլց գերմանացին յղած է ընդօրինակել զանոնք, սա 'ի Ջուլամերկ Քրդաց կողմանէ սպաննուելով՝ իր գործն կիսատ մնաց, եւ 1840ին միայն իր ընդօրինակութիւններն ձեռք անցնելով հրատարակուեցան։ Շուլցէ վերջ ընդօրինակութեան գլխաւոր աշխատողք եղած են. — Մեսրոպ եպ. Սմբատեան որ 1862էն 'ի վեր կը հրատարակէ «Արարատ» հանդէսին մէջ իր գտած արձանագրութիւններն. Սիմոնիս եւ Հիվէնեայ ֆրանսացիք՝ որք մինչ իրենց օրերն (1893) ծանօթ 68 արձանագրութեանց վրայ աւելցուցին 30 նորեր. Վ. Պէլկ գերմանացին (1892), եւ Նիկոլսկի եւ Վանսկի ռուսերն (1893—4) իրենց ճանապարհորդութեամբ կարեւոր արձանագրութիւններ հաւաքեցին։

Ընթերցման առաջին յաջող փորձն ըրաւ Ստանիսլաս Կիւար (1880), որոյ հետեւելով կատարելագործեց այդ դրութիւնն Սէյս (1881). Մեծապէս նպաստեցին նաեւ Դ. Հ. Միւլլէր (1888), եւ 'ի մերայնոց՝ Տիար Բասմաջեան 'ի Փարիզ եւ Հայր Սանտալճեան 'ի Հռոմ. Աս այս նպաստած են նաեւ Լընորման, Հինքս, Լէման, Ռօբերդ, Լայարդ եւ այլք։

Ուրարտերէնով եւ մի այլ ծանօթ լեզուով արձանագրութիւններ մեծապէս պիտի նպաստեն ընթերցման եւ հասկացողութեան. բայց միայն 1895ին երկլեզուեան (ուրարտերէն եւ ասորեստաներէն) արձանագրութիւն մը գտնուած է, սակայն շատ համառօտ ըլլալուն մեծ ծառայութիւն մը չմատոյց։

*Գալով հայկական սեպաձեւ գրովք արձանագրութեանց լեզուին՝ ըսենք արդէն՝ դեռ խնդրոյ տակ է․ ոմանք (Հինքս, Մորդման, Հիւպշման) հին հայերէն կը համարին, այլք (Հ. Սանտալճեան) բառերու մեծամասնութիւնն միայն հայերէն կը կարծեն, եւ միւսներն գրացի լեզուաց յատուկ․ երբեմն գիտուններ (Լընօրման, Սէյս) վրացերէնի մերձաւոր կ'ենթադրեն, կամ ալ որ (Գալուստ Տէր Մկրտիչեան) ուտեքէնի մօտ կը գտնեն եւ կամ անծանօթ լեզու մը կը դաւանին (Գիւար)։*

*Հայկական սեպաձեւ արձանագրութեանց մէջ դիւրաւ կը ճանչցըւին շատ մը աշխարհագրական անուններ՝ որոնց հաւանականներու ցանկն կուտամք աստ։*

*Բիանա (1) = Վան (երկիր) — Տուշպա = Տօսպ (քաղաք)․ Ուրարտու (2) = Արարատ — Երիաինի = Երեւան — Ահուրիանի = Ախուրեան — Կիեհունի = Գեղարքունի — Սուինիա = Սիւնիք — Գուռիաինի = Գառնի — Ուշխուրինի = Ուշական = Օշական — Ուեդիուռ = Ուտի — Ուիշուանի = Ուշտունի — Արտագայի = Արտագ — Էրախա = Արճէշ — Արգիշտինիլի = Արագածոտն։*

*Անիս եւ անց վերջաւորող․ տեղւոյ անուններն ըստ Լէմանի Թալդէտ-ալտրոտեան են։*

*Մենուաշի՝ Մանաւազ, Արգիշտիսի՝ Արտագած, եւ Արամէի՝ Արամ ըլլալուն կասկած չ'ունիմք։*

*Տիար Բասմաջեան արդէն վերջերս ~~[illegible]~~ մէջ հրատարակեց հայ նախարարութեանց լիակատար ցանկն՝ որոց աւագ մեծամասնութիւնն յաջողած էր գտնել սեպաձեւ արձանագրութեանց մէջ։*

*Այս շրջանին մէջ մշակութիւնն շատ յառաջ էր 'ի Հայս․ Շիրակայ դաւառի յուղթի բարեբերութիւնը առակի կարգ անցած էր։ Հայաստանի գինին եւ ձիագգիներն անուանի էին եւ արտածութեան առարկայ։*

*Հայք իրենց ձիերով ու ջորիներով Տիւրոսի հրապարակը կը լեցնէին (Եզեկիէլ ԻԷ․ 14)։ Ասորեստանեայք միշտ ձիու եւ եզի տուրք կը դնէին Հայոց վրայ, եւ Հայք իբրեւ նուէր ձի կը ղրկէին անոնց։*

*Հերոդոտ կը յիշատակէ Հայոց՝ Բաբելոնի հետ ունեցած վաճառականութիւնը, կը նկարագրէ Հայոց նաւերն, որք ձուաձեւ էին, ուռենիի ճիւղերով կազմուած, մորթով պատուած, յատակն յարդ կը դնէին եւ վրան ապրանք կը լեցնէին․ երկու թիավարք կը վարէին, եւ առնուազն մէկ էշ կ'ունենային։ Այսպէս Տիգրիսէն եւ Եփրատէն կ'իջնէին Բաբելոն, հոն ապրանք կը պարպէին, նաւն կ'աւրէին, կազմածի փայտն կը ծախէին, եւ մորթերը իշուն բեռցնելով կը վերադառնային։*

---

(1) *Ասորեստանեայց արձանագրութեանց մէջ չ'է յիշուած։*
(2) *Թալդեան արձանագրութեանց մէջ չ'է յիշուած։*

Հայք Բաբելոն կը ղրկէին նա մանաւանդ գինի․ նաւերը մինչ 50,000 տաղանդ (100,000 քիլօկրամ) կը տանէին։

Հաւանականաբար այս շրջանին մէջ Արաքսի եւ Կուրի միջոցաւ դէպ 'ի Կասպից Ծովը ալ կ'երթային, ինչպէս աւելի ուշ ատեններ կ'ընէին։

Նախահայք Ասորեստանեայց նման կը ճանչէին մետաղներն, որոնցմով զէնքեր ու զարդեր կը պատրաստէին, գիտէին եւ կերպասներ հիւսել, ջրմուղներ եւ ճանապարհներ շինել։ Հաւանականաբար հմուտ էին լծակ, ճախարակ եւ գլան գործածել 'ի պէտս շինութեանց․ սակայն ճարտարապետութեան եւ քանդակագործութեան մասին շատ ետ մնացած ըլլալ կը թուին իրենց դրացի Ասորեստանեայց բաղդատմամբ։ Հայաստանի աւերակներն դեռ երեւան չ'են հանած այս մասին երկրի ժողովրդեան ճարտարութիւնն ապացուցանող առարկաներ այս շրջանի համար։

Դ․ Փռիւգեցւոց 'ի Հայս մուտքն ու անոնց ազդեցութիւնն․ — Փռիւգեցւոց մուտքն 675էն առաջ ունեցած համարելով՝ անոնց ազդեցութիւնն մինչ 600 թուականն պիտի քննենք սա, զի այն ատեն Մարա-Պարսկական իշխանութեան տակ մտած ըլլալով Հայք՝ անոնց քաղաքակրթութեան ազդեցութիւնն սկսած է։ Վերջերս այս շրջանի Շակաց տիրապետութիւնն նկատի չպիտի առնենք, զի՝ ինչպէս տեսանք, սոքա հեղեղի մը պէս եկան, ու քանի մը տարիէն գացին, եւ անշուշտ անոնց մեծ ազդեցութիւն մը ներգործելու, եւ եթէ անոնցմէ երկրին մէջ մնացողներ եղան՝ որպէս հաւանական է՝ անոնք ալ անշուշտ համակերպեցան ու ընդունեցին երկրին քաղաքակրթութիւնն քան թէ իրենցն անոնց տալ փորձեցին։

Գալով արեւմտից եկողներուն՝ (Փռիւգեցւոց) սոքա մեծ յեղափոխութիւն մը յառաջ բերին, իրենց մուտքով տեղական իշխանութիւնն կը տկարանայ։ Արիմենա չ'ունի որ եւ է արձանագրութիւն, զի չունի պատմելու արժանի գործ․ յաջորդներն, Ռուսա Գ. եւ Սարդուրիս Գ. երկրի ներքին բարեկարգութիւնն հաստատել կը ճգնին, եւ զգալով տկարութիւննին՝ իրենց երբեմնի թշնամւոյն Ասորեստանեայց արքայից դեսպաններ ու նուէրներ ղրկելով՝ դաշինս կը կապեն, կը բարեկամանան, ու անոնց օժանդակութեամբ կ'երազեն զօրացնել իրենց իշխանութիւնը։ Այլ ի զուր, զի Ասորեստանեայք եւս տկարացած էին, ուստի եւ այս բոլոր ճիգերն ի դերեւ ելան։ Հուսկ ուրեմն Շակաց հեղեղն հասաւ, իշխանութիւնն բարձաւ, եւ ապա Մարաց լուծին տակ մտան ունենալով իրենց ուրոյն կառավարիչ իշխանն։

Ալորոտեաններէ շատեր՝ անշուշտ նեղուելով յարեւմտից եկող նորեկ տարրէն՝ սկսան դէպ ի Հիւսիս ելնել ու Կովկասի լեռնաշղթային ամրութեանց ապաւինել։ Սակայն ժողովրդեան մեծ մասն մնաց իր բնակավայրին մէջ եւ խառնուեցաւ եկ ժողովրդեան հետ։

Փռիւգեցւոց գալուստէն վերջ իսկ՝ հայ իշխանք շարունակեցին իրենց ազգային սեպածնե գրերով արձանագրութիւններն. սակայն այս իշխանութեան բարձմամբ լքուեցան, հաւանականաբար սկսան գործածել փռիւգական դիւրին տառերն՝ սերեալ ի Փիւնիկականէ.

Մեր այս կարծիքն հաստատող զօրեղ ապացոյցներ, այսինքն գրական ~~[illegible]~~ներ չ'ունիմք 'ի ձեռին, սակայն տրամաբանութիւնն կը ստիպէ զմեզ հաւատալ նորա գոյութեան, զի հնար չ'է որ այդչափ վաղեւ պրականութիւն ունեցող մի ազգութիւն յանկարծ դադրի ուրոյն գիր եւ գպրութիւն ունենալէ, մինչդեռ իր դրացի անգիր ազգեր իսկ մեծ ընդունելութիւն կ'ընէին Փիւնիկ ծագմամբ այբուբենից եւ նոյա գրականութեան կը սկսէին.

Այս գրերն ապրած են եւ յաջորդ շրջանին. արդարեւ Քրիստոսէ 4 դար առաջ՝ Արեւմտեան Հայոց վրայ իշխող Թիւրպաղ կառավարչին դրամներն այս Փիւնիկ-Փռիւգական գրերն կը կրեն.

Այս տառերն եթէ ոչ 'ի ժողովրդեան՝ գոնէ 'ի մեհեանս կը գործածուէին.

Արշակունի հարստութեան առաջին շրջանին ալ հաւանականաբար կը գործածուէին այս տառերն. Ըստ Բ. դարու յոյն պատմիչ Փիլոստրոսի՝ Արշակ Թագաւորն Հայոց (128—105) ինձ մը բռնելով՝ զայն Նիւսիա աստուծոյն նուիրեց եւ կենդանւոյն պարանոցն անցնել տալով ոսկի մանեակ մը, վրան գրեց՝ հայ տառերով՝ «Արշակ Թագաւորն Հայոց՝ Աստուծոյն Նիւսիա». Այդ յոյն պատմչի օտար տառեր անուանելն հաւանականաբար այս փռիւգական գրերն էին.

Ե. դարու հայ պատմիչք Դանիէլեան գրերու ի ձեռն Մեսրոպայ գիւտի մասին խօսելով կ'ըսեն թէ՝ դոքա նոր չ'են այլ երբեմն ի կիր արկեալ եւ բարձի թողի եղած (Կորիւն, Խորենացի, Փարպեցի), եւ որք անշուշտ այս փռիւգական գրերն կ'ակնարկեն. (Տես «Մագոտմն հայ տառից». Վիէննա 1895).

Աղգային պատմիչք այս հինաւուրց գրերն Դանիէլեան տառեր կ'անուանեն, զի 'ի սկիզբն Ե. դարու Դանիէլ անուն մի եպիսկոպոսի քով գտաւ Մեսրոպ.

Այդ գրերու թիւն հաւանականաբար փիւնիկ գրոց քանակաւ 22 էր, եւ հաւանականաբար ներկայ հայ այբուբէնի մէջ մօտաւորապէս հնչում ունեցող գրերն որպէս բ. ռ. գ, կ. չ, ջ, ճ եւն. մէկ գրով միայն ներկայացեալ էին եւ կարելի է խազերով եւ պայմանական նշաններով՝ միեւնոյն գրերու աւելի նուրբ կամ խիստ արժէք տալով կը բաւականանային, զորս Մեսրոպ 2 տարի գործածելէ վերջ կատարելագործեց՝ դրացի ազգերէ գրեր առնելով.

Հաւանականաբար այս գրերն գործածուեցան մինչ Մակեդոնական տիրապետութիւնն, յորժամ յոյն գրերն մուտ գտան ի մեզ, եւ միայն

յ'ազգային մեհեանս կը գործածուէին այս տառեր՝ որպէս ի սկզբան Դ. դարու բնաջինջ եղան 'ի ձեռն Գրիգոր Լուսաւորչի։

Ե. Մար-Պարսիկ ազդեցութեան ժամանակ. — Յետ Նինուէի կործանման Կիաքսար կը տիրէ Հայոց (608), ու 'ի ձեռն Պարոյր Հայկազնին կը կառավարէ զայնս։ Կիաքսարի յաջորդաց օրով Հայք քանիցս ապստամբութեան փորձեր կ'ընեն եւ վերջապէս Կիւրոսի լուծին տակ կը մտնեն. Վահագնի ապստամբութեան փորձերն յաջող ելք չ'են ունենար եւ վերջապէս Հայք Պարսիկ իշխանապետութեան տակ կը մնան մինչ Աղեքսանդր Մակեդոնացին (331)։

Մար-Պարսիկ տիրապետութեան այս երեք դարերն ունեցած են բաւական խոր ազդեցութիւն։ Մարք եւ Պարսիկք համացեղ են ծննդեամբ, երկուքն ալ Արիական, որք եւ ապա կրկին իրարու հետ խառնուեցան եւ միեւնոյն քաղաքակրթութիւնն ունէին։

Պարսիկք, ինչպէս առիթ ունեցանք ըսելու, յաւուրս Դարեհ Վշտասպեանի Ասորաբաբելացւոց սեպաձեւ գրութիւնն առին, ու այդ սեպախմբերու ոմանց տառական արժէք տալով այբուբենարան մ'ունեցան, ու այդ գրերով գրականութիւն մը մշակեցին, որ տեւեց մինչ Աղեքսանդրի տիրապետութիւնն. թէպէտ Արշակունի Պարթեւք գործածեն զայնս մինչ Քրիստոսի Ա. դարն՝ իրենց երկրին մէջ (Պարթեւաստան)։

Այս այբբենական սեպաձեւ գրերով Քսերքսէս Վանայ քարաժայռին վրայ դրոշմել տուած է եռալեզուեան (Պարսիկ, Մար եւ Բաբելական) արձանագրութեան պարսկերէնի մասն, սակայն հայ լեզուի համար գործածուած ըլլալու ապացոյցն չ'ունիմք ց'արդ։

Տիար Բասմաջեան կը կարծէ թէ՝ հայ այբուբէնն այդ պարսիկ սեպաձեւ գրերէն սերած է (1)։ Մենք փիւնիքական տառերէն յառաջ եկած կ'ենթադրեմք որպէս առիթ ունեցանք ըսելու։

Ըստ Քսենոփոնի՝ իր ժամանակն (401) պարսիկ լեզուն շատ ընդհանրացած էր 'ի Հայս եւ գրեթէ ամէն ոք կը հասկնար։

Այս ատեններն արդէն բանաստեղծութիւնն զարգացեալ էր ի Պարսիկս, որոյ ապացոյց են Շահնամէներն, եւ որ մեծապէս ազդած է մեր նախահարց վրայ։

Պարսից կրօնն նախ պարզ էր։ Երկնից կամարն էր պաշտէին իբր գերագոյն Աստուած. սակայն ապա Զրադաշտական եղան Քրիստոսէ 6 դար առաջ, ընդունելով բարւոյ եւ չարի սկզբունքներն. կրօն՝ որ ապա անցաւ եւ դրացի ազգաց, որպէս եւ Հայոց։

---

(1) Տե՛ս Բասմաջեանի 5/17 Մայիս 1889ին առ Փրիդրիխ Միւլլէր մեծանուն լեզուագէտ եւ ուսուցիչն Վիէննայի համալսարանին գրած նամակն, հրատարակեալ 'ի Բազմավէպ հանդիսին 1898 Նոյեմբերի թուոյն։

*Պարսիկք 'ի Սկիւթացւոց առին եւ Տարրապաշտութիւն եւ նամանաւանդ կրակի պաշտօնն որոց հետեւեցան եւ Հայք։*

*Պարսիկք ոչ տաճար ունէին եւ ոչ արձան. բացօթեայ կը կատարէին իրենց կրօնական արարողութիւնները։ Գիտէին սակայն կառուցանել գեղեցիկ պալատներ եւ դամբարաններ։ Իրենց ճարտարապետութեան ուսուցիչք Ասորեստանեայք եղած են, սակայն իրենք գիտցած են այդ արուեստն բարգաւաճել եւ ճարտարապետական ուրոյն ոճ մ'ունենալ։ Այս պարսիկ ճարտարապետութիւնն մեծապէս ազդած է իրենց տիրապետութեան ժամանակամիջոցին Հայոց շինութեանց վրայ։*

*Պարսիկք ճանապարհներու ցանց մը հաստատած էին իրենց կայսրութեան ամէն կողմը, եւ ընդ երկարութիւն ճանապարհաց օթեւաններ շինած էին 'ի պէտս ճանապարհորդաց եւ վաճառականութեան։ Ամէն կողմ թղթատարական դրութիւններ կար, եւ կանոնաւոր սուրհանդակներ կ'երթեւեկէին։*

*Հայաստան ոչ միայն ունեցաւ այլ եւ պահեց այդ հաղորդակցութեան միջոցներն, զորս կը հաստատեմք եւ Արշակունեաց օրով։*

*Ըստ մեր պատմահօր՝ Տիգրան հայկական բանակն զարգացուց, երկրագործութեան եւ վաճառականութեան յառաջդիմութեան մեծապէս նպաստեց։*

*Այս շրջանին մէջ Հայք ոչ միայն Եփրատի եւ Տիգրիսի միջոցաւ մինչ Պարսից Ծոցն կ'երթային՝ այլ եւ Ալեքսանդրէն Արաքսի եւ Կուրի միջոցաւ կ'երթային Կասպից ծովը, եւ կ'իջնէին Օքսոս եւ Յաքսարտէս գետերու միջոցաւ մանէին 'ի Բակտրիա, ի Սոգդիանիա, 'ի Պարթեւս, եւ նոյն իսկ 'ի Հնդիկս* (Malte-Brun, Géog.)։

**Զ. Յունական ազդեցութեան ժամանակ.** — *Ալեքսանդր Մակեդոնացւոց տիրապետութեամբ կը սկսի այս շրջանն որոյ մահուամբ Հայաստան Սելեւկեանց բաժին եղաւ, որք երկու եւ ապա մի հայազգի իշխանաւ կը կառավարէին եւ վերջապէս 160ին (Ն. Ք.) Պարթեւք տիրելով հաստատեցին մի ուրոյն թագաւորութիւն որով եւ վերջ կը գտնէ այս շրջանն։*

*Մակեդոնացիք եւ Սելեւկեանք յոյն քաղաքակրթութեան հետեւողներ էին, ուստի այս ներկայ շրջանն յունական ազդեցութեան շրջան անուանեցինք։*

*Այս շրջանի մէջ Հայք հաւատարիմ մնացին իրենց Զրադաշտական կրօնին։ Յոյն բարբառն, իբր ժամանակի քաղաքակրթութեան լեզուն, սկսաւ գործածուիլ 'ի Հայս՝ գոնէ զարգացելոց կողմանէ, որով եւ Յոյն դպրականութիւնն, որոյ հետեւանօք անշուշտ լքուեցաւ Փիւնիկ սեմամբ փիւնիքական տառերու գործածութիւնն, եւ գուցէ միայն մեհենական գրութեանց կը գործածուէր։ Ժողովուրդն 'ի կիր կ'արկանէր յոյն տառերն որ միեւնոյն ձայնն ունէին, եւ աւելի յարմար էին յունական*